Մոտ մեկ տարի է անցել այն օրից, երբ Երևանի № 179 դպրոցի 4-րդ դասարանի աշակերտ Տիգրան Ղուլյանը փորձեց հորինել իր առաջին երգերը։ Ունկնդիրները տանեցիներն էին, բարեկամները, ծանոթները։— Ինքն է՞ գրել,— կասկածում էին սկզբում, իսկ հետո համոզվելով՝ գովում էին, ոգևորում։— Ծարունակի՛ր,— ասում էին,— ժողովրդական հնչերանգներ կան երգերիդ մեջ։ Լավ է։

Տպագրում ենք Տիգրան Ղուլյանի «Սևան» երգը, խոսք՝ Գեղամ Սարյանի




ԳԵՂԱՄ ՍԱՐՅԱՆ

# ՍԵՎԱՆ

Սևանի կապույտ ջրեր,
Կարծես թե նազում եք դուք,
Կարծես թե ափերն ի վեր
Կարկաշով վազում եք դուք:

Կրկներգ.
Ձեր շուրջը սարեր կան ծեր,
Նրանց ցոլքն է ձեր սրտում,
Կարծես թե հազարագույն
Բյուրեղյա վազում եք դուք:

Սևանի կապույտ ջրեր,
Նոր կյանքի ալիքն եք դուք,
Դարձել եք արտ, այգիներ,
Բերքառատ բարիքն եք դուք:

Կրկներգ.
Ձեր շուրջը սարեր կան ծեր,
Նրանց ցոլքն է ձեր սրտում,
Կարծես թե հազարագույն
Բյուրեղյա վազում եք դուք:

Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

№ 7 • 1984

Լույս է տեսնում 1923 թվականից



Շապիկը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

ԱՇՈՏ ՍԵՎՈՅԱՆ

## ՀԻՇՈՂՈՒԹՅՈՒՆ

Մթնշաղ իջավ խաղաղ դաշտերին,
Մենակ թողեցինք մենք արտ ու արոտ,
Հայրս ինձ առավ իր հոգնած մեջքին,
Բռնեց գյուղ տանող ձորակը քարոտ:

Լուսինը անխոս ուղեկցում է մեզ,
Լուսատտիկն իր կրակն է վառել,
Աշխույժ ճռռում են ծղրիդներն անտես,
Մութ զանգվածներ են սարերը դառել:

Օրոր է ասում զեփյուռը հավքին,
Սիրտս ճխում է պայծառ աստղերով,
Ես՝ փոքրիկ մանուկ, հորս շալակին
Տուն էինք դառնում հանդից գիշերով:

Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



# ԿՅԱՆՔԸ ՃԱՄԲԱՐՆԵՐՈՒՄ

Գնացինք արևածագը դիտելու: Հետո վերցրել էի նաև մատիտներ ու թուղթ, որպեսզի, եթե կարողանամ, ուրվագծեմ տեսածս: Բայց չհաջողվեց. ինձ թվաց, որ գույները չեն բավարարի: Ընկերներիս հետ լուռ դիտում էինք. ամեն ինչ գեղեցիկ էր ու վեհ, չափազանց գերող: Չգիտեմ միտքս ինչպես բացատրեմ, բայց հետո, երբ սարից իջնում էինք, ինչ-որ տրտմություն էր մեզ պատել: Անսահման գեղեցկությունից ծնված տըրտմություն: ... Ես այդ օրը երբեք չեմ մոռանա:

**ՍՏԵՓԱՆ ՄՈՎՍԻՍՅԱՆ**
Մեսրոպ Մաշտոցի անվ. ճամբար, II ջոկատ

Մեր ջոկատում կան երկու եղբայրներ, որոնք սկզբում շատ էին բարկացնում ջոկատավարներին: Նույնիսկ մեզ կոպտում էին: Բայց մենք, ջոկատավարի խորհուրդով, ոչ թե նրանցից երես թեքեցինք, այլ հակառակը՝ կամաց-կամաց փորձեցինք մտերմություն հաստատել: Հաջողվեց: Նրանք լավ տղաներ են, հարկավոր պահին աղջիկներին պաշտպան են կանգնում: Ճամբարում և առհասարակ, որքան հեշտ է ընկեր գտնելը, այնքան էլ հեշտ է կորցնելը: Ընկեր գտնելն ու պահպանելն է խնդիրը:

**ԺԻԱՆՆԱ ԱՎԵՏՅԱՆ**
Գրիշա Հակոբյանի անվ. ճամբար, III ջոկատ

Ես վեցերորդ անգամ եմ գալիս ճամբար: Ինձ ավելի շատ դուր եկավ Գրիշա Հակոբյանի անվան ճամբարը: Այն անտառի մեջ էր: Երեկոները, երբ կապույտով են օծված լինում մեր տնակները, ինձ թվում է, ուր որ է պիտի կարողանամ... բանաստեղծություն գրել: Փոքրիկ բանաստեղծություններ՝ իմ նոր ընկերների, նրանց ազնվության, գեղեցիկ արարքների մասին:

Միայն ես կցանկանայի, որ մեր ճամբարում լիներ նաև նվագախումբ, մագնիտաֆոնը չի կարող նրան փոխարինել:

**ԱՐԵՎԻԿ ԲԱՐԽՈՒԴԱՐՅԱՆ**
Գրիշա Հակոբյանի անվ. ճամբար, II ջոկատ

Ճամբարում ինձ գրեթե ամեն ինչ հետաքրքրում է: Ամեն մի օրն ունի իր հըմայքը: Հետաքրքիր է նույնիսկ... ճաշարանում հերթապահելը, խոհարարներին օգնելը: Շատ եմ ուրախանում, երբ ընկերներս ճաշի ժամանակ գոհունակությամբ են նայում: Բայց տխրում եմ, երբ չարչարվում ենք ու խրախուսանքի չենք արժանանում: Մանրուքներում նույնպես հարկավոր է, որ ուշադիր լինենք իրար նըկատմամբ:

**ՎԵՐԳԻՆԵ ՍԱՐԳՍՅԱՆ**
Ջվարթնոց ճամբար, I ջոկատ

Ճամբարում սովորում ենք նոր խաղեր, պարեր և երգեր: Երբ հայրս և մայրս եկել էին ինձ տեսության, ես նրանց համար մի քանի նոր սովորած երգեր երգեցի, շատ ուրախացան: Բայց, ինձ թվում է, ճիշտ չէ, որ ծնողները հաճախակի այցելում են իրենց հանգըստացող երեխաներին: Մենք նրանց կարոտում ենք, բայց նրանց իզուր է թըվում, թե մենք միայնակ ենք, տխուր ենք: Կարևորն այն է, որ ճամբարում բացի երգերից ու խաղերից, սովորում ենք նաև ինքնուրույնության:

**ՍԱՐԳԻՍ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
Յու. Գագարինի անվ. ճամբար, II ջոկատ



# ՇԻՐԱԶԻ ՀԵՏ

Մեծ բանաստեղծին ես չտեսա: Երբ կարդում էի նրա ստեղծագործությունները, չէի ձգտում տողերում փնտրել նրան, քանի որ գիտեի՝ նա կա և իմ կողքին է և կարող եմ ամեն րոպե տեսնել նրան: Միայն հիմա, երբ ձեռքս եմ վերցնում նրա անմահ երգերը, ամեն տողի մեջ ուզում եմ նրան գտնել, իմ սիրելի բանաստեղծին:

Հովհաննես Շիրազն իմ բանաստեղծն էր, ամբողջովին, գարնան բանաստեղծը:

Ինձանից հետո դպրոցում շատ-շատերը կսովորեն ու նրանց ամենասիրելի առարկան ևս կդառնա գրականությունը: Նրանք կզգան, թե նա որքան մեծ բանաստեղծ է, ու այնպես կափսոսեն իրենց ուշ ծնվելու համար, ինչպես ես, որ չշտապեցի տեսնելու նրան:

**ԼԻԱՆՆԱ ՀՈՎԵՅԱՆ**
Մասիսի շրջան, Գեղանիստի դպրոց.
9-րդ դասարան

Երբ Շիրազը հյուր էր մեր դպրոցում, իսկ նա հաճախ էր գալիս, նրան ցույց տվեցինք մեր «Կենդանի անկյունը»: Շիրազը երկար կանգնեց աղվեսի վանդակի մոտ: Աղվեսը աղեկտուր պատեպատ էր զարկվում, ուզում էր դուրս գալ վանդակից: Շիրազն իրեն հատուկ միամիտ պարզությամբ կենդանապահին խնդրեց ազատել աղվեսին: Հետո, համոզվելով, որ անհնար է, առաջարկեց ավելի «լուրջ» տարբերակ. աղվեսի վանդակի դուռը փակել, այնուհետև բանալին գցել նրա առաջ, եթե աղվեսը ուշադրություն դարձնի, մոտ վազի, ուրեմն այլևս աներևակայելի է նրան վանդակում պահելը, որովհետև նա գտել է իր ազատության բանալին:

Շիրազն ինձ համար մնաց հենց այդպիսին. միամիտ, բարի ու մարդասեր:


**ԱՆԳԻՆ ՎԱՐԴԱՊԵՏՅԱՆ**
Երևանի № 157 դպրոց,
9-րդ դասարան


Ընտանիքով գնացինք Գառնիի տաճարը տեսնելու: Մեքենայով էինք: Ճանապարհին անընդհատ շատախոսում էինք: Ճամփեզրին նստած գառնեցիներին բարևելով՝ մտանք տաճար: Տաճարում լռություն էր: Բոլորս ուշադրությամբ զննում էինք տաճարը, հիանում ամեն քանդակով, կողքին եղած ավեր եկեղեցու ամեն մի խաչքարով: Ինձ զարմացնում էր մեր նախնիների զարմանահրաշ արվեստը: Հայոց երգ ու տաղով, քանի՜-քանի հայ իշխանների և թագավորների ամառային հանգստյան վայրն է եղել:

Գառնի տաճարի բակում մենք հանդիպեցինք բանաստեղծ Հովհաննես Շիրազին: Նա իր ընկերոջ հետ էր: Մոտեցանք, բարևեցինք: Ես ինձ շատ երջանիկ էի զգում, որովհետև Շիրազն իմ ամենասիրելի բանաստեղծներից մեկն է, նրա բանաստեղծությունները մոտ են իմ սրտին:

Շիրազը մեզ բացատրում էր, որ հայ ժողովուրդը այս քարերից էլ ծանր, մեծ վիշտ է կրել: Բայց իր հոգու ջերմությունը տվել է գալիք սերունդներին, որոնք սիրով ու երախտագիտությամբ են հիշում իրենց նախնիներին:


**ՄԽԻԹԱՐՅԱՆ ՀՐԱՆՏ**
Կիրովական


ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԻՐԱԶ

# Ո՞ՐՆ Է, ԲԱԲՈ, ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔ

— Ո՞րն է, բաբո, մեր հայրենիք.
— Էն, որ ունի բարձր երկինք,
Էն, որ ունի կարմիր արև՝
Յուր կապուտակ գլխի վերև.
Էն, որ ունի լեռն Ալագյազ՝
Հավքերն՝ աշուղ, ջրերը՝ սազ:
Էն, որ տեսքով իր Սևանի
Մազերն արձակ ու գեղանի՝
Նստած հարսի կնմանի:
Էն, որ ունի աշխարհի թագ՝
Քանց թագավոր՝ Մասիս ճերմակ,
Ճերմակ Մասիս՝ սիրտը մրմուռ,
Գլուխը վեր՝ դրախտի դուռ:
Էն, որ ունի Մասիսն ի վար
Հին-հին բերդեր, վանքեր մթար,
Որ ավերակ, բայց դեռ դարեր
Լուռ կաղոթեն երկինքն ի վեր:
Էն, որ ունի Արագ, Տղմուտ,
Եվ ափերը մամռոտ ու մութ
Գերեզմաններն են պապերուդ...
Էն, որ Կազբեկն ու Արագած՝
Արտերու մեջ՝ ախպեր կանգնած՝
Ջեռ կզարնեն գինով թասին
Ու կձենեն մեր Մասիսին,
Թե «Հե՜յ, բաբո, բավ չէ՞ մենակ
Պանդուխտ մնաս ամպերու տակ...»

# ԲԱՌԸ ԶՈՐԱՑՐՎԱԾ ԶԻՆՎՈՐ Է

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

**ՋՈՒՐ**
**ՋՐԱՂԱՑ**
**ՋՐՀՈՐԴԱՆ**
**ՋՐՀՈՐ**

Մեզնից ամեն մեկն էլ ջրի մասին ինչ-որ բան գիտե: Մեկը շատ, մյուսը՝ քիչ: Բայց յուրաքանչյուր մարդ պարտավոր է ավելի շատ բան իմանալ, որովհետև ջուրը կյանքի գոյության սկզբնաղբյուրն է:

Նրա հանրագիտարանային սահմանումն այսպիսին է: Ջուրն անհոտ, անհամ, անգույն, հաստ շերտում կանաչ-երկնագույն երանգով, թափանցիկ հեղուկ է: Բայց սա լրիվ բնորոշումը չէ: Ջուրը նաև ջրածնի օքսիդ է, ջրածնի և թթվածնի պարզագույն, սովորական պայմաններում կայուն միացություն: Ջրի քիմիական բանաձևը՝ $H_2O$, որոշվել է 1800 թվականին: Գազային ջուրն անվանում են գոլորշի, պինդը՝ սառույց: Ջուրն ամենաշատ օգտագործվող նյութն է: Ամեն տարի արդյունաբերության ու գյուղատնտեսության կարիքների համար ծախսվում են վիթխարի չափերի հասնող ջրի պաշարներ: Յուրաքանչյուր մարդ օրական խմում է 3—6 լիտր ջուր:

Մեր նախնիները պաշտել են ջուրը: Հին Հայաստանում ջրին նվիրված համաժողովրդական շատ տոներ են եղել: Այդ տոներից մի քանիսի բաղկացուցիչ մասն է եղել իրար վրա ջուր ցանելու սովորությունը, որ հասել է մինչև մեր օրերը: Մեր նախնիները իրենց բախտավորությունը կապել են նաև ջրի հետ: Երաշտի ժամանակ զանազան զոհաբերություններ են կատարել՝ համոզված լինելով, թե դրանով կշարժեն աստծու գութը և նա անձրև կթափի: Եվ պատահական չէ, որ ջուրը հայերենի ամենագործածական երկու բառերից մեկն է (մյուսը հաց բառն է): Հայերենն ունի շուրջ 150 հազար բառ, որից 1500-ը կազմված է ջուր արմատով: Այսպիսով մեր լեզվի յուրաքանչյուր 100 բառից մեկի արմատը ջուրն է:

Ջուրը հայերենի զառամյալ բառերից է: Նա այնքան տարեկան է, ինչքան հայ ժողովուրդը: Այդ բառի մեջ հնադարյան ճողփյուն կա: Եկեք ծանոթանանք ջուր արմատով կազմված բառերից մի քանիսին: Հնագույններից է **ջրաղացը,** որը շատ հարազատ է Հայկական լեռնաշխարհին: Ջրաղաց նշանակում է ջրի աղաց, **աղորիք,** ու՞ր աղում են հացահատիկը: Միջնադարում, երբ դեռ չէին սկսվել զանգվածային գաղթերը, Հայաստանում, մոտավոր հաշվումներով, կար 60 հազար ջրաղաց: Չնայած հիմա հացահատիկը այլուր են դարձնում էլեկտրաղացներում, բայց **ջրաղաց, ջրաղացքար** և **ջրաղացպան** բառերը մոռացության չեն տրվել:

**Ջրհորդան** նշանակում է ջրի խողովակ, որի միջով հոսում է տանիքի վրայի ջուրը: Գործվում է նաև **ջրորդան** ձևով, բայց առավել ճշգրիտը **ջրհորդանն** է (ջուր- հորդել):

**Ջրհոր** (ջուր— հոր) է կոչվում խոր փոսը,

հորը, որից ջուր են հանում: Գուցե շատ դըպրոցականներ չեն հասցրել ջրհոր տեսնել: Նրանք կարող են զբոսարշավի գնալ Զվարթնոց հնավայրը և տեսնել այնտեղ հին ջրհորը:

Եկեք թվարկենք ջուր արմատով կազմված բառերից մի քանիսը. **ջրաբարբան** (ջուրը բարձրացնելու համար տեխնիկական սարք), **ջրաբան** (ջրի մասնագետ), **ջրաբեր** (ջրի բերած, ջուր բերող, ջրկիր), **ջրաբզեզ** (ջրի բզեզ), **ջրաբնակ** (ջրում ապրող), **ջրադաղձ** (ջրային դաղձ), **ջրազուրկ** (ջրից զուրկ), **ջրաթափանց** (ջուր անցկացնող), **ջրախեղդ** (ջրում խեղդված), **ջրածածկ** (ջրով ծածկված), **ջրածորակ** (ջրի ծորակ), **ջրահարս** (ջրային հավերժահարս), **ջրահեղձ** (ջրում խեղդված), **ջրաման** (ջրի աման), **ջրամբար** (ջուր հավաքելու տեղ), **ջրամույն** (ջրի մեջ սուզված), **ջրաներկ** (ջրով բացվող ներկ), **ջրանկար** (ջրաներկով նկարված նըկար), **ջրարբի** (ջրով ոռոգվող), **ջրհեղեղ** (հեղեղ), **ջրմուղ** (ջուրը մղող), **անջրդի** (չըոռոգվող), **խորջրյա** (ջրի խորքում), **աղաջուր** (աղի ջուր), **սակավաջուր** (ջրապակաս): Եվ այլն ասել պետք չէ, որովհետև այսպես կարելի է երկար շարունակել:

Ջրի մասին շատ առածներ կան: Ահա դրանցից մի քանիսը: **Հացիկ, ջրիկ՝ կյանք երջանիկ: Երկու ջուր, մի հաց: Ջուրն անուշ է, քանց նռան գինին: Աշնան գինին, գարնան՝ ջուրը: Ջրի օգուտն էլ շատ ա, վնասն էլ: Ջուր չտեսած՝ մի բոբկանա: Ջրի բերածը ջուրն էլ կտանի: Ջրի ակունքում չեն թքի: Թե նույն տեղը ջուրն անընդհատ կաթի՝ քարն էլ կծակի: Ջուրն իր գնացած տեղով կգնա: Ջուր տեսնի, ձուկ կլինի, կատու տեսնի՝ մուկ** (անսկզբունք մարդ): Այս առածները ստեղծվել են տարբեր հազարամյակներում: Դրանք իրենց մեջ խտացնում են ժողովրդի կենսափորձն ու իմաստությունը:

Հայերենի մյուս արմատների նման ջրով բարդված բառերն էլ մեր պատմության մի մասն են կազմում: Նրանց խորքում ծալքծալք անցյալ կա: Անհավասիկ՝ **ջրբաշխ** կամ **ջրաբաշխ** նշանակում է այգիների ջրերը բաշխող, ջուր բաժանող: Սակավաջուր Հայաստանում ,դա եղել է կարևոր պաշտոն:

Ամենքդ էլ լսել եք ջրանցքի մասին: Դա արհեստական ջրատար է, որի միջով ջուրը հոսում է մի տեղից մյուսը: Հայաստանում շատ ջրանցքներ կան: Դրանց մի մասը կառուցվել է հնում: Գեղեցիկ է **ջրանցույց** բառը: Դա կամուրջ-ջրատար է, կառույց, որ անցկացվում է հեղեղատի, ձորի, գետի, ճանապարհի վրայով: Սովետական Հայաստանում ջրանցույցներ են կառուցված Ախուրյան Աղստև, Հրազդան, Արփա, Որոտան գետերի ջրանցքների վրա:

Վաղնջական դարերում ժամանակի հաշիվը պահելու համար մարդիկ օգտագործել են արևի ու ջրի ժամացույցները: Արևի ժամացույցն, իհարկե, «աշխատում էր» միայն արևոտ օրը (ստվերով որոշում էին օրվա այս կամ այն պահը): Իսկ ջրաժամացույցն աշխատում էր գիշեր ու ցերեկ: Դա շատ հասարակ կառուցվածք ուներ: Ջուրը լցնում էին ուռուցիկ փորով սրվակի մեջ և նրա նեղ վիզն ուղղում մյուս՝ նույնաչափ դատարկ սըրվակի մեջ: Ջուրը մի սրվակից մյուսն էր լըցվում 24 ժամվա ընթացքում: Նրա հոսքով էլ որոշում էին օրվա այս կամ այն ժամը:

Երևի դուք ամենքդ էլ գիտեք, թե ինչ է **բուլիոնը**: Այդ բառը շատ եք լսել ձեր մայրերից: Բայց պետք է իմանաք, որ դա ունի հայերեն իր գեղեցիկ անվանումը՝ **արգանակ** կամ **մսաջուր**: Ի դեպ ,ավելացնենք, որ արգանակը հազար տարով մեծ է բուլիոն բառից:

Հնում գուշակությունը շատ էր տարածված: Գուշակներին կոչում էին **դյութող**, **հմայող**, **բախտ բացող**: Աստղերի միջոցով բախտ բացողին անվանում էին **աստղագուշակ**, գարու հատիկների միջոցով բախտ բացողին՝ **գարեհըմա** կամ **գարեդյութ**, թղթի օգնությամբ բախտ բացողին՝ **գրբաց**, ջրի օգնությամբ բախտ բացողին՝ **ջրագուշակ** կամ **ջրադյութ**: Վերջինիս արածը մի պարզունակ արարողություն էր: Վերցնում էր մի ջրաման, ինչ-որ բան նետում նրա մեջ և ջրի շարժումով որոշում, իբր թե ինչ է սպասվում այս կամ այն մարդուն:

Հայկական տեղանուններից շատերը կազմված են ջուր արմատով: Դրանցից են Ջրաբերդը (գավառ, ամրոց, գյուղ)՝ Արցախում (այժմ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզ), Ջրակուս գյուղը ԼՂԻՄ-ի Հադրութի շրջանում, Ջրառովիտ գյուղը Հայկական ՍՍՀ Մասիսի շրջանում, Ջրաձոր գյուղը Հայկական ՍՍՀ Ամասիայի շրջանում, Ջրաշեն գյուղը Արևմտյան Հայաստանի Վանի վիլայեթի Թիմար գավառում և այլն:

Ջուր արմատով ստեղծվել են շատ դարձվածքներ, որոնց մի մասը թևավոր խոսքի ուժ ունի: Մտաբերենք մի քանիսը: **Ջուր անել** (արտը կամ այգին ջրել, շատ լավ սովորել): **Ջուր լցնել** ջրաղացին (գործել կամ խոսել մեկի օգտին): **Ջուրը գցել** (կորցնել, կորստյան մատնել): **Ջրի գին** (անչափ էժան): **Ջրի երես հանել** (բացահայտել, ասպարեզ հանել, բոլորին հայտնի դարձնել): **Ջրի ճամփա** (հանախելու, երթևեկելու համար սովորական, մատչելի դարձած): **Ջրից չոր դուրս գալ** (անպատիժ մնալ):

# ԱՐԲԵՑԱԾ ԲՆՈՒԹՅԱՆ ԳԵՂԵՑԿՈՒԹՅԱՄԲ

Լենինականի № 36 դպրոցի ծրագրած երկօրյա էքսկուրսիային մասնակցելու ցանկություն հայտնողները շատ-շատ էին:

Հետո էքսկուրսիայի մասնակիցները համալրվեցին պիոներների և դպրոցականների պալատի տուրիստական խմբակի, ապա և Տերյանի ու Շահումյանի անվան դպրոցների աշակերտներով: Նրանց թիվը հարյուրից անցնում էր:

Արշավի մասնակիցները մինչև Կիրովական ուղևորվեցին գնացքով: Լենինականի պատանի տուրիստների կայանի «Ոսկե աշուն» միջոցառման մասնակիցները Վանաձորի գեղատեսիլ անկյուններից մեկում մի փոքր դադարից հետո սկսեցին Մայմեխ լեռան վերելքը: Դպրոցականներից յուրաքանչյուրն իր հետ կրում էր 15—20 կիլոգրամ բաշով ուսապարկ և հաղթահարեց շուրջ 40 կիլոմետր տարածություն:

Կիրովականում լենինականցիներին միացավ տեղի պատանի տուրիստների կայանի անդամները, և վերելքը կրեց յուրատեսակ մրցության բնույթ: Դպրոցականների հետ էին ֆիզկուլտուրայի դասատուներ, ավագ ջոկատավարներ, մանկավարժներ, և նրանց վերելքը կրեց քննության բնույթ՝ տուրիստական հմտությունից, կողմնորոշումից (քարտեզի ու կողմնացույցի օգնությամբ), այլ գիտելիքներից: Վերելքի մասնակիցների մեծ մասը լրացրեց ՊԱՊ համալիրի նորմաները:

Դժվարին էր վերելքը: Ցուրտն իրեն ըզգացնել էր տալիս: Գիշերեցին վրաններում ու քնապարկերում: Իսկ լուսաբացը նրանք դիմավորեցին լեռներում: Եվ ոչ մի նկարչի վրձին ի վիճակի չէ նկարելու բնության այդ աննկրկնելի գեղեցկությունները:

Ուշագրավ էին նաև մյուս մրցույթները, գեղարվեստական ինքնագործունեության ելույթները, պարերն ու երգերը: Համտեսի մրցույթում իրենց պատրաստած ամենալավ կերակուրներով աչքի ընկան Անիչկա Քերոբյանը (№ 36 դպրոց), Անահիտ Սարգսյանը (Տերյանի անվան դպրոց):

Վայրէջքը ևս հետաքրքրական էր: Արշավի մասնակիցները շարադրություններ կգրեն ոսկե աշնան մասին, ուր կնկարագրեն բնության գրկում անցկացրած իրենց երկու օրը, Մայմեխի վերելքը, լուսաբացի դիմավորումը, հայրենի երկրի սքանչելի պատկերները:

**ՌՈԲԵՐՏ ՀԱԿՈԲՅԱՆ**



**ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ**

# ՀԵՐԱԿԼԵՍԻ ՄԵԾԱԳՈՒՅՆ ՍԽՐԱՆՔԸ

Կես գիշերն անց էր արդեն, քեֆն ու ուրախությունը հասել էին գագաթնակետին: Ադմետոսը զգաց, որ սառը շոյանքի պես մի ստվեր անցավ և իսկույն էլ տեսավ ահավոր այցելուի կերպարանքը. սև ու վիթխարի թևերը թիկունքին ծալած, մարած ջահը ձեռքին, անհուն խավարներից իր մութ աչքերը նրան հառած կանգնել էր մահվան դժնի ու անողորմ աստվածը: Հայտնվել էր իր խոսքի համաձայն:

Հառաչեց Ադմետոսն, ասաց.

— Ահա եկավ ու անցավ կյանքիս երջանկագույն պահը:

Նա ցած դրեց կիֆարան, ոտքի ելավ: Կինը երգում ու խայտում էր, ուրախացնում ամուսնու հյուրերին, սակայն նրա հայացքից ոչինչ չէր վրիպում. տեսավ, թե ինչպես գունատվեց Ադմետոսը, աչքերի փայլերը խամրեցին, և նա լուռ դուրս գնաց: Պղնձեկուռ և ոսկեզարդ տիմպանը, որ ձեռքերին խաղացնում և խփելով պարում էր, ցած դրեց և նույնպես դուրս գնաց ամուսնու ետևից, սյուների ետևից տեսավ, թե ինչպես խիստ հուզված մտավ հոր ննջասենյակը: Ամեն ինչ հասկացավ. որդին գնաց հորն իր վերջին հրաժեշտը տալու:

Այնտեղ հայրը լաց էր լինում.

— Իմ կյանքի սև օրն է սա, ես զրկվում եմ իմ միակ զավակից:

— Մնաս բարո՛վ, հա՛յր, իմ ոգին արդեն լքում է ինձ, զգում եմ, ինչպես աստիճանաբար սառչում են ոտքերս ու ձեռքերս, ինչպես մահվան սառը շունչը մոտենում է սրտիս: Մնաս բարո՛վ, այլևս անկարող եմ ոտքի վրա մնալ, ես պետք է հրաժեշտ տամ կնոջս ու զավակներիս: Իսկ հյուրերին ոչինչ մի՛ ասեք, թող ուրախանան մինչև առավոտ...

— Իմ սիրելի ու միա՛կ զավակ,— հեծեծում էր հայրը, բայց արցունքներ չէին գալիս աչքերին, ոչ թե նրա համար, որ վիշտը փոքր

(Սկիզբը՝ №№ 5, 6-ում):



էր, պարզապես նրա մարմնում այլևս գործող ոչ մի ծորան չէր մնացել։— Ի՜նչ դժբախտն եմ ես, որ ահա իմ աչքի առաջ մահանում է իմ երեխան և ես չեմ կարող ոչինչ անել։

— Մնաս բարո՜վ, հա՜յր...

Ադմետոսը հազիվ էր մնում ոտքերի վրա, և հայրը անկողնուց ելնելով նեցուկ էր եղել նրան։ Ու հանկարծ Ադմետոսը զգաց, որ ուժերը վերադառնում են, կյանքը, որ թվում էր արդեն լքում է իրեն, կրկին իր մեջ էր։

— Բայց սա ի՞նչ է, ահա անցավ ընդարմությունը և ես այլևս չեմ տեսնում ահավոր պատկերը իմ գլխավերևում, նա թողեց ինձ ու գնաց մեկ ուրիշ տեղ։ Ահա ձեռքերս ու ոտքերս կրկին տաքացան, վերադարձավ իմ կորովը ու չքացավ սրտիս ծանրացած սառը ուժը... Ո՞վ էր, որ վերջին պահին հանձն առավ իր կյանքի գնով ինձ փրկել մահից։

Որդու վերակենդանանալը հոր աչքի առաջ էր կատարվում, և նա զարմացած էր այդ արագ փոփոխությամբ։ Քիչ առաջ նա իր ձեռքերի մեջ զգում էր, ինչպես որդու մարմինը սառչում ու թուլանում է, ու հանկարծ ուժ ստացավ միանգամից, այնքան անսովոր էր այդ ամենը, նա զգաց անմահ աստվածների ներկայությունը, ինչպես շատ անգամ պատմել էին ուրիշ հույներ, որ ականատես էին եղել նման հրաշքների։

Ադմետոսը դուրս նետվեց՝ ուրախալի լուրը կնոջը հայտնելու։ Սյուների ետևից դուրս գալով՝ նրան ընդառաջ վազեց կինը, և նրանք նետվեցին միմյանց գիրկ։

— Կատարվեց Ապոլոն աստծո պատգամը, անհայտ մեկն իր կյանքի գնով երկարացրեց իմ կյանքը, այսինքն մեր երկուսիս երջանկությունը։ Ուրեմն, գտնվեց մեկը, որ սիրում է ինձ իր կյանքից էլ առավել։

— Այո՜, սիրելի՛ս,— ասաց Ալքեստիդեն նրան փարվելով։

— Ուրեմն, ես կապրեմ։

— Կապրե՜ս, սիրելի՛ս, դու պիտի ապրե՜ս։

— Ես զգացի, ինչպես մահվան ոգին ետ քաշվեց ինձնից, ինչպես գնաց մահը ու ետ եկավ կյանքը... Բայց ի՞նչ է կատարվում քեզ հետ, Ալքեստիդե՛, դու հետզհետե թուլանում ես իմ գրկի մեջ...

— Մնաս բարո՜վ, սիրելի՛ս...— շշնջաց Ալքեստիդեն արդեն նվաղող աչքերն ամուսնուն հառած։— Ես չէի կարող տանել քո մահը, ո՜վ իմ սիրասուն ամուսին, իմ երեխաների հայր Ադմետո՛ս։ Ես երջանիկ եմ, որ քեզնից առաջ եմ լքում այս աշխարհը, շնորհակալ եմ կյանքից, որ այնքան երջանկություն է տվել ինձ։ Քեզնից հետո ես չէի

կարող տեսնել այս տունը, պարտեզը, անգամ արևի լույսը, ուրվհետև ամեն ինչ մենք միասին ենք տեսել: Մնացե՛ք և հիշեցե՛ք ինձ: Միայն մի ցավ է, որ վերջին պահ տանջում է հոգիս, Ադմետո՛ս: Ինձնից հետո խորթ մայր չբերես, որ մեր զավակներին քեզնից չօտարացնի, որ իր խորթ սրտով չվանի նրանց և իմ խեղճ երեխաներն ավելի սաստկությամբ չզգան իրենց մոր բացակայությունն ու իրենց անմխիթար որբությունը:

Ադմետոսը թևերի վրա տարավ նրան, պառկեցրեց մահճում և արդեն նվաղող աչքերին նայելով, ասաց.

— Իմ սիրելի՜ Ալքեստիդե, կրկնակի, եռակի, հազարապատիկ դժվար է բաժանվելը քեզանից, քան իմ սեփական կյանքից: Ինչո՞ւ արեցիր այդ բանը, մի՞թե ավելի դժբախտ չեմ ես հիմա, որ քո մահվան պատճառն եմ դառնում, քո կյանքի գնով պիտի ապրեմ ու հավիտյան ողբամ ամենաթանկագին էակի կորուստը:

— Մո՛տ բերեք երեխաներին,— ասաց Ալքեստիդեն շրթերը հազիվ շարժելով:

— Ալքեստիդե՜,— բացականչեց ամուսինը,— ես տեսնում եմ, ինչպես է գունաթափվում քո դեմքի վարդագույնը, ինչպես խամրում են քո աչքերը, ինչպես սառչում են իմ ափերի մեջ քո ձեռքերը...

— Մնաք բարո՜վ, արդեն հազիվ եմ լսում քո ձայնը: Զգում եմ, ինչպես մահվան շունչը սառն ալիքի պես բարձրանում է դեպի սիրտս... Մնաք բարո՜վ, Ադմետո՛ս, մնաք բարո՜վ, իմ սիրելի՛ զավակներ, ահա հավիտյան փակում եմ աչքերս ու էլ երբեք, երբե՜ք ձեր սիրելի դեմքերը... Ինչո՞ւ ես լալիս, Ադմետո՛ս, սիրելի՜ ամուսինս:

— Ինչպե՞ս չլամ, դու ընդմիշտ լքում ես մեզ ու երբեք չեմ տեսնելու քեզ, չեմ լսելու քո ձայնը, սև հողը պիտի գրկի հրաշալի մարմինդ: Մի՞թե կարող եմ ես չլալ:

— Իսկ ես ահա ժպտում եմ, որ դու պիտի ապրես, Ադմետո՛ս...

Հրաժեշտի ժպիտը դեմքին էլ Ալքեստիդեն հավիտյան փակեց աչքերը:

Սուգն իջավ Ադմետոսի ուրախ տան վրա: Ադմետոսը աղախիններին ու բոլոր կանանց պատվիրեց, որ նրանք իրենց կացարաններից դուրս չգան, չերևան հյուրերի աչքին, որպեսզի Հերակլեսը չնկատի նրանց դեմքի տխրությունը և նրա ուրախությունը չխաթարվի: Իսկ իր ընկերներին խնդրեց վերադառնալ խնջույքի սրահ ու շարունակել խրախճանքը:

— Թող մեր հյուրը ոչինչ չկասկածի: Գնացե՛ք, բարեկամնե՛ր: Հիմա ես էլ կգամ:

Եկավ հայրը՝ Փերատոս արքան, շոյեց հանգուցյալի վրա խոնարհված որդու գլուխը, աշխատելով մխիթարել նրան:

— Ես գիտեի, որ Ալքեստիդեն կանի այդ քայլը, նա նույնիսկ պարտավոր էր, էլ ո՞ր օրվա համար է կինը: Նա օտար էր արյունով, դու հարազատ ու արյունակից մարդ չես կորցրել՝ հայր, եղբայր կամ քույր, որ վշտով մաշես քո հոգին: Դու նոր կին կառնես, ավելի գեղեցիկը, նորից կապրես գոհ ու երջանիկ:

— Ո՛չ, երբե՛ք,— ասաց Ադմետոսը:

— Բոլորն են սկզբում այդպես ասում:

— Նա երեք որբ է թողել ինձ, ամեն անգամ նրանց աչքերի տխրությանը նայելով ի՞նչ պատասխան պիտի տամ նրանց՝ որտե՞ղ է նրանց մայրը, ինչո՞ւ չկա: Ես տեղ չունեմ այլևս կյանքում:

Ադմետոսը չորացրեց արցունքները, գնաց խնջույքի սրահ, նստեց իր տեղը, Հերակլեսի կողքին:

— Ո՞ւր էիր, Ադմետո՛ս,— կանչեց Հերակլեսը:— Առանց քեզ ես չեմ կարող ուրախանալ: Խնդրեմ կրկին ձե՛ոքդ առ քո աստվածային կիֆարան ու նվագի՛ր ինձ համար: Ես չեմ հագենում քո կիֆարայի աննման հնչյուններից:

Դեռ կնոջ մարմինը չէր սառել, Ադմետոսն այստեղ նվագում և զվարճացնում էր իր հյուրերին: Սակայն Հերակլեսը նկատում էր, որ ինչ-որ բան է կատարվել, մարդկանց դեմքի արտահայտությունն այլ էր, մոտ կանչեց մատռվակներից մեկին ու հարցրեց.

— Ինչո՞ւ ես տխուր, ի՞նչ վիշտ է տանջում քո հոգին, մի՞թե ոչինչ չի կարող անել քեզ համար Հերակլեսը:

— Օ՜, օտարերկրացի՛, ես տխուր չեմ, ահա տեսնում ես՝ նույնիսկ ժպտում եմ: Այս տանը ոչ մի պատճառ չկա տխրելու:

— Վերցրու՛ այս մի թաս գինին ու խմի՛ր ինձ հետ... Բայց ու՞ր չքացան կանայք, ես այլևս ոչ մի կին չեմ տեսնում:

Ինքն էլ չհասկանալով ինչու՝ Հերակլեսը ևս սկսեց թախծել, նրանի՞ց էր արդյոք, որ անհասկանալի պատճառով կանայք չքացան հանկարծ: Ադմետոսի նվագի՞ց էր, որ ուրախ հնչյունների մեջ ասես հեծեծանք էր լսվում:

— Խնջույք և ուրախություն, կյանք և մահ: Ի՞նչ արժեն մեր սխրանքները, Ադմետո՛ս, եթե մենք էլ աստվածների նման անմահ չենք: Կմեռնենք, ավա՜ղ, կմոռացվենք մենք ու մեր սխրանքները, ուրիշ հերոսներ կծնվեն, չեն հիշի Հերակլեսին:

Մահվան ու ժամանակի հանդեպ իր անզորության գիտակցությունից էր, թե ինչ, իսկ նրա համար առհասարակ անընդունելի



Նկ. ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

էր իր անզորությունն ընդունելը ինչի նկատմամբ լինի, հանկարծ Հերակլեսի տխրությունը փոխվեց վայրագ կատաղության, բռունցքով հարվածեց սեղանին, ասաց.

— Ես չե՞մ, որ զսպել եմ մահվան դռունքի պահապանին, այս բազուկներո՞վ չեմ խեղդամահ արել Նիմեյան առյուծին, այս ուսերի՞ն չեմ պահել երկնակամարը... Մահ չկա՜, ես արհամարհու՛մ եմ մահը, բերե՛ք այստեղ Քերբերին, թող ինձ հետ սեղան նստի, ես թքել եմ դժոխքի վրա, թքել եմ մահվան վրա, ես ահ չունեմ, ոչինչ չի կարող սարսափեցնել Հերակլեսին, հիմա բոլորդ կտեսնեք դա, աշխարհում ոչինչ չի կարող ահաբեկել Հերակլեսին: Բերե՜ք այստեղ Քերբերին:

Առաջարկը խրախճավորներին անասելի դուր եկավ, նրանց տաքացած գլուխներին մի անսովոր արկած էր հենց պետք, բոլորն աղմուկով ելան, աթոռները գլորեցին հատակին, թասերը թափվեցին ցած, մեծ ժխորով հորդացին փողոց:

Քաղաքը քնած չէր, տներից դուրս թափվեցին մարդիկ, խառնվեցին իրար և ամբոխը շարժվեց դեպի նավահանգիստ: Բոլորը հուզված աղաղակում, գոռում էին, սոսկումից ճչում, անասելի աղմուկ էր:

— Հերակլեսը ուզում է ոչնչացնե՜լ Քերբեր շանը,— գոռում էին ոմանք:

— Նա մա՜հն է ուզում ոչնչացնել, այսուհետև մահը չի՜ լինելու,— գոռում էին ուրիշները:

Ջահակիրները ցատկեցին նավի վրա, շրջապատեցին Քերբերի պղնձակուռ վանդակը, լույսից, աղմուկից և կենդանի մարդկանց կերպարանքից ահաբեկված շունը սկսեց ահավոր ձայնով կաղկանձել: Այդ ձայնը հավիտյան պիտի մնար ապրողների ականջում: Նրա պարանոցի շուրջը բաշի տեղ վխտում էին զարհուրելի տեսքի դժոխային օձերը, որոնց ֆշշոցից մի ընդհանուր սարսուռ էր տարածվում չորս կողմ: Երկար, հաստաբեստ պոչը կանաչ աչքերով ահատեսիլ մի վիշապ էր, որի բազմաշար թունոտ ատամների արանքից կրակի պես դուրս էր նետվում ու կրկին ներս քաշվում եռաթև խայթը: Սակայն ամենից զարհուրելին նրա հայացքն էր, որին շատերը չէին դիմանում, ընկնում էին ուշակորույս:

Վանդակը նավից իջեցրին և ջահերով շրջապատված, փողոցներով տարան դեպի պալատ: Երկար պիտի հիշեր Փերե քաղաքը Հերակլեսի այցն ու այդ խելագար երթը:

Վանդակը հասցրին պալատ և դրին խրնջույքի սեղանին: Շունը շարունակում էր զարհուրաձայն կաղկանձել, ահավոր աղմկում

չին հուզված մարդիկ, Հերակլեսը ելավ տեղից, որպեսզի բացի վանդակի դուռը և շանն ազատ արձակի: Մարդիկ փախան իրար ոտի տակ տալով, աղմուկն ավելի մեծացավ, պալատի պատերը դղրդում էին:

— Դո՜ւրս, անասո՛ւն,— գոռում էր Հերակլեսը շան վրա:— Թող տեսնենք ինչ պիտի անի ինձ մահվան այս պատգամավորը:

Այդ ժամանակ Հերակլեսին մոտեցավ Ադմետոսի կառավարն ու նրա մտերիմ ընկեր Լիպարիտը և ասաց նրան.

— Օտարերկրացի՛, մի՜ ծաղրիր մահը և դժոխքը, քանի որ այս պահին մահն է թևածում այս հարկի տակ և ողջ պալատն է սգի մեջ: Մատաղահասակ այն կինը, որ քիչ առաջ այս սրահում երգում ու պարում էր քեզ համար, այժմ պառկած է մահվան մահճում:

Նա պատմեց եղելությունը և Հերակլեսը լսածից ցնցվեց:

— Քո ուրախությունը չմթագնելու համար Ադմետոսը բոլորիս պատվիրել էր ոչինչ չասել, բայց ես այլևս համբերել չկարողացա:

— Իսկ ես խնդրում էի նրան նվագել և խեղճ տարաբախտը երգում էր ինձ համար: Իր վեհությամբ իմ բարեկամի արարքը վեր է իմ բոլոր սխրանքներից: Ի՞նչ կարող եմ անել ես իմ բարեկամի համար, ինչպե՞ս հատուցեմ հյուրընկալության այս անսովոր մեծարանքի համար... Ես կհատուցեմ նրան՝ վերադարձնելով Ալքեստիդեի ոգին մեռյալների աշխարհից:

Հերակլեսն այն մարդը չէր, որին կարողանային ետ պահել իր վճռից: Նա պատվիրեց բոլորին նստած մնալ, շարունակել խնջույքը, իսկ ինքը ճանապարհ ընկավ:

Առաջին անգամը չէր նա այդ ճանապարհով գնում, միակ մարդն էր նա, որ դըժոխք էր մտել ու կենդանի վերադարձել, աստվածներն անգամ խուսափում էին նրան ընդդիմանալ, կատաղության պահին նա կարող էր դժոխքն էլ, դրախտն էլ, աստվածների ողջ արարչագործությունը կործանել:

Երբ Հերակլեսը հորիզոնում չքացավ աչքից, ամենքը վերադարձան պալատ ու լուռ նստեցին ավերված սեղանների մոտ:

Պելեպոնեսի հարավային լանջով Հերակլեսն իջավ Տինտարոսի մթին քարայրը և քայլեց դեպի Ստիքս սրբազան գետի եզերքը: Բաղեղապսակը դեռ գլխին, հարբած և ուրախ օրորվելով, քայլում էր նա, ասես մի խնջույքից մյուսն էր գնում:

— Թանատո՜ս,— կանչում էր նա մահվան աստծուն:— Թանատոսի՜կ... Թատոսի՜կ...

Ստիքսի գետեզերքին, խորը մութերի մեջ սուզված, իր նավակի կողքին նստած էր մեռյալների ոգին մինչև Հադեսի դռները տեղափոխող թիավար Քարոնը: Ծերը գլուխը բարձրացրեց և կշտամբանքով նայեց հավիտենական խավարի թագավորության անդորրը խախտող մարդկանցից ամենահանդուգնի երեսին:

— Մի՜ հոխորտա, Հերակլե՛ս,— ասաց նա,— շո՛ւրջդ նայիր, մահ է ամենուր, մարդկային ոգիներ են չորս կողմ վխտում տառապանքի և տխրության այս աշխարհում:

Հերակլեսը մոտ եկավ:

— Ասա՛ ինձ, Քարո՛ն, իմ բարեկամ Ադմետոսի սիրեցյալ կնոջ Ալքեստիդեի ոգին արդյոք հասե՞լ է Ստիքսի ափերը:

— Այո՛, Հերակլե՛ս, ես նրան հենց նոր հասցրի մինչև մահվան աստված Թանատոսի դարպասները ու ետ եկա: Գիտեմ այդ պատմությունը, մահվան սպասավորի հոգու համար անգամ չափազանց ճնշող եղելություն է: Ես դրա մասին էի խորհում, երբ դու եկար... Զարհուրելի, ընկճող, երբեմն էլ վսեմ ու հուզիչ պատմություններով, որոնք վերջացել են մահերով, լիքն են իմ ականջները, որովհետև անհիշելի ժամանակներից ես եմ մարդկային ոգիները տեղափոխող նավավարը տխրության այս աշխարհում, բոլորն այստեղով են գալիս ու անցնում: Սակայն ամեն անգամ նորից եմ զարմանում, թե ի՜նչ անհատակ խորություն է մարդկային հոգին, ինչե՜ր ասես, որ չի կարող դուրս հանել մարդն իր հոգու խորխորատներից՝ ոճիրներ, խարդավանք, սիրո անսահման նվիրվածություն, հոգևոր ի՜նչ գանձերի հետ նաև հրեշավոր չարագործություններ, ինչի՜ համար ասես, որ իրար չեն սպանում: Եվ վերջ չունի, դարձյալ գալիս են ու բերում նորանոր պատմություններ, մեկը սքանչելի նախորդից, մյուսն առավել զարհուրելի... Գիտեմ ինչի համար ես հայտնվել, ես քեզ կհասցնեմ մինչև մահվան դարպասները, որից այն կողմ ես թափանցել անզոր եմ: Քեզ առարկելն իմաստ չունի, ես դա գիտեմ քո նախորդ այցից, երբ եկար Քերբեր հեզաբարո մեր պահապան շունը տանելու: Բարձրացիր նավակը: Անգամ մենք, անմահներս ենք քո կամակատարը դարձել,— ծերը կշտամբանքով գլուխն օրորեց:— Մի՞թե կարելի է մահկանացու մարդուն այդքան հզոր ու համառ արարել:

Նավակն անաղմուկ սահեց Ստիքսի մեռյալ ջրերի վրայով, և Քարոնը տեսավ, որ Հերակլեսը հանգիստ դիտում է ջրի խորքերը, ուր փակ աչքերով, դեմքերով դեպի վեր, հատակից պոկված ջրիմուռների նման, միմյանց կողքի, մեծ ու փոքր, անհել ու ջահել,

կին ու մանուկ, անմարմին, աննյութ ոգիներ սահում էին ջրին համընթաց: Անհավոր տրխրալի այդ տեսարանին դիմանում էր ժայռի պես կարծր Հերակլեսի սիրտը:

— Սրանք էլ մարդ են եղել, ապրել են մեզ պես, ուրախացել կյանքով,— ասաց Հերակլեսը՝ մեռյալների սրտամաշ երթը դիտելով:— Անիծվա՜ծ մահ, անիծվա՜ծ մահվան աստված Թանաթոս:

— Ինչո՞ւ ես անիծում մահը, մահկանացու,— ասաց Քարոնը, անաղմուկ թիավարելով Ստիքսի ջրերում:— Ինչո՞ւ եք մահը միայն չարիք համարում: Խե՜ղճ մարդիկ, որ ստրուկ եք ձեր նմաններին, ո՛չ կռվով, ո՛չ խելքով, ո՛չ խնդրանքով չեք կարողանում ստանալ ձեր ազատությունը բռնակալից, ո՞վ է ազատում ձեզ ստրկության ճիրաններից, մահը չէ՞, որ տանում է ի վերջո բռնակալին, և դո՞ւք չեք, որ ցնծում եք առնելով նրա մահվան բոթը: Մահն է մարդկության մեծ բարերարը, ողջ հինը, փտածը, այն ամենը, որ փակում է կյանքի ընթացքը, նա է, որ տանում է աղբը աղբանոց: Ծանր է նրա գործը, բայց նա է ձեր մեծագույն աղբատարը:

Երբ տեղ հասան ու Քարոնն անաղմուկ նավակը մոտեցրեց ափին, գետեզերք ելնելով Հերակլեսն ասաց.

— Դու այստեղ սպասի՛ր ինձ, ծերո՛ւկ, ես շատ չեմ ուշանա:

— Մահկանացո՛ւ,— ասաց Քարոնը,— մի՞թե վստահ ես, որ պիտի հաղթես մահին ու վերադառնաս, մինչև հիմա դա ոչ մեկին չի հաջողվել:

— Բայց ես Հերակլե՜սն եմ,— ասաց մարդկանցից ամենահզորը:

— Խե՜ղճ մոլորյալ... Գնա՛, կսպասեմ, ես նույնիսկ սիրեցի քեզ քո անկոտրում հոգու համար, բայց իմացի՛ր, որ ով ապրում է, նա պիտի մահանա, ահա դու ինքդ քո սեփական ոտքերով քայլում ես դեպի Հադեսի դուռը, ավա՜ղ, այնտեղից վերադարձ չկա: Բայց ասա՛ ինձ, Հերակլե՛ս, մի՞թե ամենևին չես ափսոսում քո ջահել կյանքը կամ արդյոք չկա՞ մի բան, որ թողել ես այնտեղ՝ վերևում, և հիմա ափսոսում ես:

— Ափսոսում եմ այն սեղանը, որ մնաց Ադմետոսի պալատում, պղնձե սկուտեղի մեջ գոլորշի արձակող հորթի ազդրամիսն եմ ափսոսում, որ չկերա և վերջին թաս գինին եմ ափսոսում, որ չխմեցի:

Քարոնը կշտամբանքով գլուխը կախեց:

— Այս մարդը խենթ է, բայց նա ինձ դուր է գալիս,— ասաց նա ինքն իրեն:

(շարունակելի)

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ




Ասում էին գող հա՛ գող,
Բայց ես չէի հավատում.
Ո՛չ տուն ունի, ո՛չ էլ փող,
Ի՞նչ են խեղճին զրպարտում:
Սակայն, հենց այս առավոտ
Ինքս տեսա, թե ինչպես
Քիչ-քիչ թռավ, եկավ մոտ,
Պատշգամբից մտավ ներս:
Սեղանին կար հաց, պանիր՝
Մի թերթի մեջ փաթաթված,
Եկավ, առավ, որ տաներ,
Հացն ու պանիրն ընկան ցած:
Նա, որպեսզի չամաչեր,
Ի՞նչ էր մնում անելու.
Իբր՝ հաց-մաց վեջը չէր,
Թերթն էր եկել տանելու:
Թռավ ծառին ու բացեց,
Թերթը դրեց իր առաջ,
Գլուխը կախ, սկսեց
Իբր կարդալ՝ ձախից աջ:
Իբր՝ իրեն էլ ոչի՜նչ,
Ո՛չ մի բան չի հմայում.
Սակայն շուտ-շուտ ակնապիշ
Պատշգամբիս էր նայում:
Մեղքս եկավ: Հենց այդպես՝
Թողած և՛ հաց, և՛ պանիր,
Տնից արագ ելա ես,
Որ գար ուզածը տաներ:
... Արդեն տարե՞լ է, թե՞ ոչ,
Դեռ չգիտեմ այդ մասին.
Թե ուզում եք իմանալ,
Մեր տուն գնանք միասին:



ՍԱՍՈՒՆ ՍԱՌԱՋՅԱՆ

# Եղելություն

Կայծակը խփել էր... գառների հոտին: Այո՛, այո՛, հենց գառների հոտին: Թերևս զարմանալի էր, նույնիսկ տարօրինակ ու, այո՛, անհավատալի, բայց կատարվածը անհերքելի փաստ էր: Խփել էր ու կոտորել ողջ հոտը:

Դեպքը իր բնույթով եզակի էր: Կատարվել էր բարձրագահ Աբուլի արևելյան փեշերին: Պատահածի համար ո՞ւմ կարող էին մեղադրել: Ինչպես տարեց հովիվներն էին ասում՝ երկնքի գործ էր:

Գործը իրոք լուրջ էր: Հանաք չէր, գառների մի ամբողջ ստվար հոտ խսիր էր դարձել: Փրկվել էին միայն հոտի մեջ եղած մի քանի ուլերը, որոնք անձրևի պահին գառներից զատվել, պատսպարվել էին խոժոռ մի ժայռի տակ: Կոլտնտեսությանը ահագին վնաս էր հասել՝ անհատույց վնաս: Եվ ահա դեպքի վայրն են ժամանում կոլտնտեսության ղեկավարներն ու մի հանձնաժողով՝ հետազոտելու համար կատարվածը:

— Երկնքի զայրույթն է,— ծխամորճը հանելով բերանից, մի տեսակ հանդիսավոր խոսեց ամենաավագ հովիվը:— Աստված բարկացել է մեզ վրա:

— Ինչո՞ւ,— ժպտացին ժամանողները,— ի՞նչ ենք արել նրան:

Նրանք իսկույն գործի անցան: Մանրազնին սկսեցին ստուգել շրջապատը, նայեցին ամեն ժայռ ու թումբ, թուփ ու մացառ: Հետո նկարահանեցին ողջ տեղանքը, կասկածելի համարյա թե ոչինչ չգտան: Սկսեցին հարցուփորձ անել հավաքվածներին: Հետաքրքրվեցին, թե ովքե՞ր են եղել գառնարածները և ո՞ւր են նրանք:

Պարզվեց, որ գառնարած տղաները, որ երկուսն էին, չթրջվելու համար անձրևը սկսելուն պես վազել ու մտել էին հովտամերձ ժայռախորշը: Կայծակի պահին տղաներից մեկի լեզուն վախից բռնըվել էր: Եվ դեպքի վայրը հասածները տղաներին տարել էին մոտիկ յայլան:

— Ամենայն հավանականությամբ,— ասաց գործը հետազոտողներից մեկը,— կայծակը հարվածել է հենց այս ժայռերին,— նրանք մոտեցան ժայռախորշին, ուր պատսպարվել էին գառնարածները և, որպես ապացույց, մատնանշելով մի մեծ, սև ճեղքվածք, ավելացրեց.— Հարվածը դիպել է այստեղ ու նրա ալիքը տարածվել է գառների վրա:

— Բայց այդ ժայռը ճեղքվել է, ըստ երևույթին, ոչ կայծակի հարվածից,— առարկեցին նրան,— նայեք, մուրճի, ծանըր մուրճի հետքերը դեռ մնում են: Երկրորդ, թերևս ամենակարևորը՝ գառնարածները հենց այդտեղ են կծկված եղել... իսկ նրանց խնդրեմ, ոչ մի բան չի պատահել:

— Ուրեմն,— նահանջել չուզեց առաջինը,— ձեր կարծիքով տղաներից մեկի լեզուն բռնվելը քի՞չ է...

— Այդ, այո, քիչ բան է ասում այդ, նման ուժեղ հարվածի տակ ընկնողները ոչ ավելի, ոչ պակաս կոչնչանային... իսկ տղաներից մեկի լեզուն վախից է բռնըվել:

Մարդ ուղարկեցին գառնարածներին բերելու:

Տղաներին բերեցին:

— Պատմեք ամեն ինչ մանրամասն, ինչպես եղել է:

Նրանք պատմեցին, թե ինչը ինչպես

եղավ: Պարզվեց, որ այդ առավոտ հովիվներից՝ Լևոն քեռին, գառների հոտին, թեթևակի կաղացող երկու խոյ է խառնում, համարելով, որ այնտեղ նրանք համեմատաբար հանգիստ կլինեն: Տղաները, իհարկե, դեմ չեն կանգնում, մտածելով, թե գառների հետ նրանք իրենց համար հանգիստ կարածեն: Մանավանդ, որ տղաներին հիացրել էր խոյերի պատկառելի տեսքը, առանձնապես նրանց հաստ ու ոլորուն կոտոշներով ծանր գլուխները:

Առավոտից սկսած օրը պարզ, արևոտ ու խաղաղ էր եղել: Կեսօրի մոտ սակայն խաղաղությունը խռովվում է. զուլալ ու գեղեցիկ ժպտացող երկինքը խոժոռվում է և այնտեղից իրենց փեշերն են ցած կախում սև-սև ամպերը: Շրջապատը մեկեն այնպես է մռայլվում ու մթնում, որ թվում է, ուր որ է վրա կհասնի գիշերը: Տղաները գառների հոտը հավաքում են հովտի մեջտեղն ու իրենք արդեն սկսվող անձրևից չթրջվելու համար, վազում մըտնում են հովտամերձ ժայռախորշը և այնտեղից աչք պահում գառների վրա: Երկնքում սկսվում է ամպերի որոտը և կայծակները փայլփլուն զիգզագներով ծվատում են երկինքը: Տեղատարափ անձրևը փոխվում է տեղատարափ կարկուտի: Հենց նույն ժամանակ գառներին խառնված խոյերը, որ մինչ այդ միանգամայն հանգիստ ու անվրդով էին, անսպասելիորեն սկսում են կռվել մոլեգին կատաղությամբ: Իսկ որոտները, որոնք գնալով ուժգնանում էին, կարծես ավելի են բորբոքում կռվող խոյերի մոլեգնությունը: Խոյերի գլուխների իրար զարկվելու ահեղ թափից, կեռ ու մեռ կոտոշներից կայծեր են թռչում:

Տղաներն իրենց թաքստոցից ագահ հետաքրքրությամբ հետևում էին այդ անսովոր մենամարտին: Եվ ահա խոյերի հերթական բախման ժամանակ մի շատ ուժեղ ու սուր ճայթյուն է լսվում ու գրեթե նույն ակնթարթում շլացուցիչ բոցը պարուրում է կռվողներին:

Այնուհետև տղաները ոչինչ չէին հիշում:

— Պարզ է,— աղաղակեցին այս ու այն կողմից:

— Պարզ է... կռվող խոյերի եղջյուրներից թռչող կայծերն էլ հենց աղետի պատճառ էին դարձել, կայծակին հրավիրել իրենց վրա:

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ԳՐԵՏ ՎԱՐԴԱՆՅԱՆ

## Ծաղիկն ասաց

Ծաղիկն ասաց մեղվին.
— Որ թերթերս փակեմ,
Դու ի՞նչ կանես:—
Մեղուն ասաց նրան.
— Տերևներդ՝ վերմակ,
Թերթերդ՝ ինձ բարձիկ...
Ես կքնեմ մուշ-մուշ,
Մինչև լույսը բացվի...

## Մթնում էր կամաց...

Թառած ծառի ճյուղերին
Խոսում էին ծտերը:
Մեկն ասում էր.— Ցուրտ է շատ,
Սառում են իմ ոտերը...

Մյուսն ասում էր.— Իրոք,
Ցուրտ է, ես էլ եմ մրսել:
Ձյունը խորն է, օրը կարճ,
Ո՞վ էր այսքան ցուրտ տեսել:—

Մեկը վերին ճյուղերից
Ծվծվում էր.— Սոված եմ:
Ո՛չ կուտ տվին, ո՛չ էլ հաց,
Այսօր ի՞նչ է պատահել...

Օրը արդեն ճաշ դառավ:
Հովն քնով էր անցել:
Բակի բոլոր ծտերը
Սոված էին մնացել...



# Չե՞ն խանգարի արբանյակները հրեշտակներին

Իզուր չէ, որ XX դարի երկրորդ կեսը համարվում է գիտության և տեխնիկայի դար:

Երկնքից չեն թափվել հեռուստացույցները ու ինքնաթիռները, տիեզերական հրթիռները և լազերները: Եվ ոչ էլ կախարդական փայտիկի հարվածով են դրանք հայտնվել: Այդ բոլորը մարդուն տվել են նրա միտքը, աշխատանքը, շրջապատող աշխարհի գիտական ճանաչումը:

Եվ համենայնդեպս, չնայած մենք ապրում ենք XX դարում և քայլ չենք կարող անել առանց հեռախոսի, հեռուստացույցի, մետրոյի, օդանավերի, ժամանակակից դեղամիջոցների, որոշ մարդիկ դեռ այսօր էլ հավատում են աստծուն: Նրանք աղոթում են, կնքում են երեխաներին, պսակվում են եկեղեցում, մեղքերի թողություն են խնդրում, ամենազոր աստծու օգնությունն են հայցում, ինչպես դա անում էին հարյուր, երկու հարյուր, հինգ

հարյուր տարի առաջ:

Բայց այն ժամանակ ամենակրթված մարդն իսկ շրջապատող աշխարհի մասին ավելի քիչ գիտեր, քան այսօրվա դպրոցականը: Մեր օրերում գիտության նվաճումները հստակ ցույց են տալիս, որ գոյություն չունեն աստվածային և գերբնական ուժեր, որ ղեկավարեն մարդու կյանքը և ամբողջ աշխարհը:

*

Շատ ու շատ դարեր եկեղեցին իշխել է մարդկանց մտքերի և ճակատագրերի վրա: Եկեղեցական գրքերը ոչ միայն բացատրություններ էին հորինել, թե ինչպես է ստեղծված աշխարհը և որն է մարդու տեղը այդ աշխարհում, այլև հանդիսանում էին հասարակության բարոյական և իրավաբանական օրենսգրքերը:

Անցան տարիներ, դարեր, պետության ձեռքն անցավ քաղաքական իշխանությունը, իսկ գիտական հայտնագործությունների շնորհիվ երևաց աշխարհի մասին կրոնական պատկերացումների ծիծաղելի լինելը:

Եկեղեցին ինչպե՞ս պետք է վերաբերվեր գիտական հայտնագործություններին, տեխնիկայի նվաճումներին. հերքե՞ր, ինչպես մի ժամանակ էր հերքում, որ Երկիրը պտտվում է Արևի շուրջը: Այլևս անհնար էր այդ անել: Գիտական նվաճումները չափազանց ակնհայտ են:

Եվ ահա, որպեսզի պահպանի իր իշխանությունը մարդկանց մտքերի և սրտերի վրա, որպեսզի չկորցնի իր հեղինակությունը, եկեղեցին որոշեց հաշտության ուղի փնտրել գիտության հետ: Մըտածեց գիտության հեղինակությունը օգտագործել կրոնական հայացքները հաստատելու համար, այդպիսով ամրապընդել հավատը: Հասկանալի է, որ գիտնականների օգնության վրա հույս դնել չէին կարող: Եվ աստվածաբանները սկսեցին իրենք գործել:

«Աստված սպասում է մեզ յուրաքանչյուր դռան ետև, որ բացում է գիտությունը»: Դեռևս 50-ական թվականներին հայտարարեց կաթոլիկ եկեղեցու գլուխը՝ Հռոմի պապ Պիոս XII-ը: Մինչև այժմ եկեղեցին ձգտել է և ձգտում է այնպես մեկնաբանել գիտության տվյալները, որպեսզի դրանք... վկայեն աստծո գոյությունը:

Ասենք թե աստղագետները հանգել են այն եզրակացության, որ Տիեզերքը, որտեղ մենք ապրում ենք, ժամանակի հետ միասին փոփոխվում է: Միլիարդավոր տարիներ առաջ չեն եղել աստղեր, մոլորակներ, միգամածություններ, այլ եղել է միայն խիստ սեղմված նյութ, որը շատ փոքր չափսեր է ունեցել: Մեր ամբողջ Տիեզերքը կարծես թե տեղավորված էր մի կետում: Հետո այդ նյութը սկսեց ընդարձակվել, այնտեղ առաջացան թանձրացումներ, որոնցից և աստիճանաբար «աճեց» տիեզերական մարմինների բազմազան աշխարհը՝ մեր Տիեզերքը: Կրոնի սպասավորներն անմիջապես իրենց ձևով բացատրեցին այդ վարկածը՝ իբր, դա էլ հենց առաջին «աստվածային հըրումն էր»: Հենց աստվածն էլ ստեղծեց այդ «սկզբնանյութը» և դրան շարժում «ներշնչեց»:

Ուսումնասիրելով Տիեզերքը, աստղագետները այն հետևությունն արեցին, որ մեր ժամանակներում նույնպես առաջանում են աստղեր: Շատ լավ, հայտարարեցին աստվածաբանները, նշանակում է՝ «աստվածային արարումը» անընդհատ շարունակվում է:

Բայց չէ՞ որ նրանք դեռ անհիշելի ժամանակներից ասում են, որ «աստվածային արարումը» դա «ինչ-որ մի բանի» գոյացումն է «ոչնչից»: Իսկ գիտությունը հաստատել է, որ մատերիան՝ նյութը չի կարող առաջանալ «ոչնչից» կամ անհետ կորչել: Այն միայն փոխակերպվում է մի ձևից մյուսի, մի վիճակից մյուս վիճակի: Եթե մեր օրերում առաջանում են աստղեր, ապա ոչ թե «ոչնչից», այլ տիեզերական նոսրացած գազի և փոշու ամպերից:

Ըստ գիտության ժամանակակից տըվյալների, մեր Տիեզերքը այժմ ընդարձակվում է: Կգա ժամանակ և այն կսկսի նորից սեղմվել: Հետո նորից կընդարձակվի և այդպես անվերջ...

Վերցնենք մի ուրիշ օրինակ: Աստվածաբանները շատ են խոսում այսպես կոչված «աստվածային ներդաշնակության» մասին: Իբր թե բոլոր երևույթներն ու պրոցեսները այդպես հաջող համընկնում են իրար հետ, որովհետև այդ մասին հոգացել է աստված:

Այո՛, մարդու և նրան շրջապատող միջավայրի միջև կա ներդաշնակություն, որովհետև միլիարդավոր տարիներ մեր մոլորակի վրա զարգացել են կենդանի

օրգանիզմները և հարմարվել են նրա պայմաններին։

Ասենք, հայտնի է, որ արեգակնային ճառագայթման մեջ ամենավառը դեղնականաչավուն շողերն են։ Այդ պատճառով էլ մարդու աչքը հատկապես զգայուն է դեղնականաչավուն լույսի նկատմամբ, Եթե Արևը լիներ կարմիր կամ կապույտ, մեր աչքերը բոլորից լավ կընկալեին կարմիր կամ կապույտ ճառագայթները։



Խեղաթյուրել գիտական տվյալները եկեղեցուն չհաջողվեց։ Ավելի հեշտ էր ցույց տալ, որ իբր գիտությունը ինքը աստվածահաճո գործ է և որ գիտությամբ զբաղվելը մարդուն պատվիրել է աստված։ Կրոնի պահապանները աստծուն վերագրեցին նույնիսկ տիեզերական թռիչքները։

Անհիշելի ժամանակներից կրոնը մարդուց թաքցրել է «երկնային ոլորտները»։ Հենց այնտեղ, երկնքում է, որ կրոնապաշտների կարծիքով, տեղավորվել է «երկնային թագավորությունը», այնտեղ՝ ամպերի մեջ է ապրում ինքը՝ աստվածը։

Երկնքի մասին այդպիսի հետամնաց պատկերացումներին առաջին հարվածը տվեց օդագնացության զարգացումը։ Մարդը սկսեց ամեն օր և ամեն ժամ թևավոր մեքենաներով օդ բարձրանալ։ Եվ ոչ ոք նրան չէր խանգարում։

Կրոնի պահապաններն ասում էին, որ մարդը չի կարող ճանապարհ բացել դեպի տիեզերական տարածությունները, դեպի մոլորակներն ու աստղերը։ Իսկ մարդը դուրս եկավ տիեզերք և վստահորեն հարմարվում է այնտեղին։

Տիեզերական թռիչքները դարձել են սովորական, մարդիկ ամիսներով աշխատում են տիեզերական ուղեծրերում, մարդը ոտք դրեց լուսնի վրա։

Այս ամենը հերքել չեն կարող եկեղեցու մոլեռանդ ներկայացուցիչները։

Սկզբում նրանցից ոմանք բողոքեցին Երկրի սովետական արհեստական արբանյակների արձակման դեմ։ Իտալական մի կրոնական թերթ գրեց, որ մարդը չպետք է թափանցի սրբազան երկինք և իրավունք չունի նույնիսկ մտածել այդ մասին։ Արևմտյան Գերմանիայում լրջորեն քննարկեցին այն հարցը, թե կարելի՞ է արդյոք թույլատրել մարդուն հեռանալ Երկրից և ավելին, արբանյակները... չե՞ն վրդովի հրեշտակների անդորրը։

Սակայն նրանց այդ շփոթվածությունը նույնպես արագ անցավ։ Իտալական կաթոլիկ թերթերից մեկը գրում էր. «Աստծո ձեռքն է վառել նոր աստղեր, աստծո ձեռքը, որ գործում է յուրաքանչյուր մարդու սրտում և գիտակցության մեջ»։

Նույնիսկ այն, որ ամենից առաջ սովետական մարդիկ նվաճեցին տիեզերքը, աստվածաբանները փորձում են իրենց օգտին բացատրել։ «Դա արդեն անհնար է»,— կասեք դուք։ Բայց ահա թե ինչ էր տպագրված իտալական թերթերում. «Սովետական գիտնականների կողմից երկրի արհեստական երկրորդ արբանյակի արձակումը հաստատում է սուրբ եկեղեցու դավանանքը աստծո կողմից երկնային մարմինների ստեղծման մասին։ Եթե սովետական գիտնականները իրենց լաբորատորիաներում կարողացել են ստեղծել արհեստական երկնային մարմին, ապա ավելի ևս դա կաներ ամենազոր աստվածը»։

Այսպիսով, ստացվում է, որ տիեզերքի նվաճումը կատարվում է, կարծես թե, աստվածային պլանի համաձայն։ Իսկ մարդը հսկայական տիեզերքի առջև դառնում է ոչնչություն։ Ստացվում է, որ ոչ թե գիտությունը, այլ կրոնն է պատրաստել մարդուն թռիչքի՝ դեպի Տիեզերք, կրոնն է ապահովել երկնային քաղաքակրթության այդ մեծագույն նվաճման իրականացումը։

Ինչպես տեսնում եք, կրոնի պահապանները մեր օրերում բոլորովին չեն հերքում գիտության և տեխնիկայի նվաճումները։ Նրանք պարզապես հաստատում են, որ այդ բոլորի ետևում կանգնած է աստված։

Ոչ շատ վաղուց Հռոմի կաթոլիկ եկեղեցին պաշտոնապես հայտարարեց, որ Գալիլեյի դատը տհաճ սխալ էր որ սուրբ ինկվիզիցիան չպետք է ) հետապնդեր գիտնականին նրա գիտական հետազոտությունների համար։

Այս ամենից որոշ մարդիկ կարող են կարծել, թե կրոնը այնքան էլ վատ չէ, որ եկեղեցին ոչ թե դեմ է գիտությանը, այլ նույնիսկ կողմ է նրան, կողմ է նրա զարգացմանը։

Եկեղեցին պատրաստ է նորովի բացատրել աշխարհի կառուցվածքը, պատրաստ է ընդունել գիտնականների հայացքները բնության մասին, միայն թե պահպանի իր իշխանությունը մարդկանց վրա, պարտադրի նրանց հավատալ աստծուն։

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

# ԴՈԲՐՈՒՇԱ ԳՅՈՒՂՈՒՄ

Բելոռուս փոքրիկ Մանյա Գոլոֆևայի մեծ սխրանքի մասին, որ հերոսի անուն բերեց պստիկ հայրենասերին

Դպրոցն էր ծխում
Դոբրուշա գյուղում,
Եվ անհնար էր հրդեհը մարել:
Կարմիր դրոշը դրուժինայի
Ուր որ է պիտի բոցերում վառվեր:
Կարմիր պաստառը
Փեշի տակ դրած,
Փոքրիկ աղջիկը դեպի տուն վազեց.
— Մայրի՛կ, թաքցրո՛ւ,—
Տագնապով ասաց,—
Եվ դրոշակը մայրիկին պարզեց:
— Մա՛նյա, միամի՛տ,
Այս ի՞նչ ես բերել,
Ուր որ է կգան ու թե այս գտնեն,
Մեզ ֆրիցները կսպանեն, կայրեն:
— Սա դրոշն է մեր պիոներական,
Չեմ հանձնի, մայրի՛կ,
Ինձ թեկուզ կախեն:
Կավե սափորը կդնեմ հիմա
Խնձորենու տակ խորունկ կթաղեմ:

Հալվեց սառույցը,
Պարտվեց թշնամին,
Գետնի տակ ասես անցան գնացին:
Մեծ հաղթանակի արևը ծագեց
Կանաչ մայիսին,
Կարմիր մայիսին:
Ալ կակաչները
Ծպտացին նորից,
Եվ կակաչի պես արևոտ ու վառ
Մանյան դուրս բերեց
Կավե սափորից
Պիոներական դրոշը պայծառ:
Եվ հաղթանակի
Տոնին երջանիկ,
Երբ որ շքերթ էր Դոբրուշա գյուղում,
Ընկերների հետ զվարթ շեփորով
Մանյան քայլում էր, երգում, ծիծաղում:
Քայլում էր ինչպես
Հերոսն անվեհեր,
Զինվորի նման հաղթանակ տարած,
Փոքրիկ ձեռքերով
Ծառքերից վերև
Դրուժինայի դրոշը պահած:

ՆԿ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ



ԽԱԺԱԿ ՍԻՄՈՆՅԱՆ

# ԿԱՍԿԱԾԱՄՏՈՒԹՅՈՒՆ



Մեր տանը վեճեր հաճախ էին լինում: Մայրս հորս մեղադրում էր կասկածամտության մեջ: Իրոք, հայրս այդպիսին էր:

Նրա կասկածամտությունն ավելի խորացավ, երբ անցյալ տարի իր նոր ժամացույցը կորցրեց:

— Թափթփված մարդ ես,— ասաց մայրս,— ով իմանա ուր գցեցիր, հիմա էլ պնդում ես, թե...

— Չէ՛, ա՛յ կնիկ, չէ՛,— գայրացած ընդհատեց հայրս,— երեկոյան լարեցի ու դրեցի այս անիծված գրասեղանին:— Ու բռունցքով մի երկու անգամ հարվածեց գրասեղանին, կարծես սա էր մեղավորն ու ավելացրեց.— Դե, հիմա ասա ի՞նչ եղավ, գոլորշիացա՞վ:

Նրա ամբողջ կասկածը մեր հարևան Մինասի վրա էր: Նա այդ երեկո մինչև ուշ գիշեր մեր տանը նարդի էր խաղում:

Ապրիլյան մի օր լենինականցի վարպետներ եկան մեր տուն: Սակարկեցին, վերջում էլ թե՝ ախպեր ջան, տունդ էնպես նորոգենք, գեղեցկացնենք, որ ինքդ չճանաչես:

Հայրս իր սովորությանը հավատարիմ կասկածելի մի հայացք գցեց ուստա Ավոյի ու նրա ընկերոջ վրա, ապա հոնքի շարժումով մորս հասկացրեց, որ սրանք էլ վստահելի չեն:

Առավոտյան հայրս գնաց աշխատանքի, ես՝ դպրոց, իսկ մայրս պետք է վարպետների հետ իրերը դուրս բերեր սենյակներից, նրանց կերակրեր և, իհարկե, չմոռանար հորս պատվերը՝ զգույշ լինել:

Ինչքան էլ չմոռանա, մայրս այդ տեսակետից հորս հակապատկերն է: Նա տունը թողել էր վարպետներին, ինքը՝ գնացել շուկա:

Երբ դպրոցից վերադարձա ու մորս տանը չգտա, մտքովս անցավ, որ մեր տանը նորից վեճ կլինի: Քիչ անց՝ եկավ

հայրս: Ներս մտնելուն պես՝ դիմեց ինձ.

— Մայրդ ու՞ր է:

— Գնաց շուկա, ախպեր ջան,— իմ փոխարեն պատասխանեց ուստա Ավոն:

Հորս դեմքն ամպեց: Նա էլի սկսեց կրծոտել շրթունքները, որը հերթական վեճի նշան էր:

Ուստա Ավոն մի քանի բառ փոխանակեց հորս հետ, հետո ավելացրեց.

— Գործն էնպես պիտի էնեմ, որ ախպորս դուր գա, էնոր սրտովն եղնի... ճիշտ չե՞մ ասում մեծ ախպեր:

Նա ուզեց, որ հայրս հաստատեր իր ասածը, բայց չէ, «մեծ ախպոր» մտքերն ուրիշ կողմ էին, նա կարծում էր, որ ուստաներն առիթից օգտված կլինեն:

Այդ պահին տաքսին կանգ առավ մեր բակի դռան մոտ: Մայրս մեքենայից դուրս եկավ ու ձեռքով արեց ինձ, թե՝ արի մթերքները տուն տանենք:

Ցանցազամբյուղներով բեռնված հազիվ էինք ներս մտել, երբ հայրս, օգտվելով վարպետների զբաղվածությունից, բռնեց մորս հայացքը, ցուցամատը դրեց աջ քունքին ու տեղում մի քանի անգամ պտտեցրեց:

Մայրս մի պատասխան շարժումով հասկացրեց, որ ինքն է այդպիսին:

Դա վեճի սկիզբն էր, այն պիտի սկըսվեր ու բորբոքվեր, եթե մայրս գրասեղանի դարակից չհաներ ու հորս բռի մեջ չդներ... ժամացույցը:

Հայրս մի պահ իր աչքերին չհավատաց:

— Վա՛հ, էս որտեղի՞ց,— զարմացած բացականչեց նա:

— Հարցրու ուստա Ավոյի՛ն, նա է գըտել,— պատասխանեց մայրս:

— Կռավաթդ որ դուրս հանեցի,— հարցին չսպասելով խոսակցության մեջ մտավ ուստա Ավոն,— տեսա սենյակի անկյունում կիսով չափ բացված մկան ծակի մեջ բանմ պսպղաց, նայեցի՝ ժամացույց: Էդիկ մկան գործ է, մեծ ախպեր, անիծվածը տարել ու դրա կաշվե գոտիով այդ օրը ճաշել է:

Հայրս շփոթվեց, գլուխը կախեց ու արագ դուրս եկավ սենյակից:

Այդ երեկո, երկար ընդմիջումից հետո, հայրս ինքը քեռի Մինասին կանչեց մեր տուն:

— Արի՛, Մինո՛ ջան, վաղուց քեզ հետ նարդի չենք խաղացել, արի մի ուժ ներս փորձենք:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



# «ՄԻ՛ ԱՆՀԱՆԳՍՏԱՑՐԵՔ ԷՍԿԻՄՈՍՆԵՐԻՆ»

Ֆրանսիացի աշխարհագրագետ և հետազոտող, Փարիզի համալսարանի պրոֆեսոր Ժան Մալորին, երբ եղավ Հյուսիսային Գրենլանդիայում՝ էսկիմոսների հայրենիքում, բազմաթիվ հարցումներից և հետազոտումներից հետո հանգեց այն եզրակացության, որ բուրժուական հասարակության մեջ էսկիմոսներին սպառնում է ամբողջովին ոչնչացման վտանգ: «Ի՞նչ տվեցին էսկիմոսներին սպիտակ եկվորները»,— հարցնում է պրոֆեսորը և ինքն էլ պատասխանում. «Պնդերես քարոզիչներ, որոնք ամեն կերպ ցանկանում են փոխել էսկիմոսների հավատը, ուսուցիչներ, որոնք ստիպում են նրանց սովորել անգլերեն և դանիերեն, որպեսզի միջնավանդները հեշտությամբ խաբեն էսկիմոս որսորդներին, տըվիցին մեծ քանակությամբ օղա պարունակող սնունդ, որից բնիկների մոտ առաջանում է կարճատեսություն, և ատամներն էլ թափվում են»:

Պրոֆեսորը պարզել էր, որ ինչ-ինչ «բարյացակամներ» ստիպել էին Հուդզոնի ծոցի էսկիմոսներին սալաթ աճեցնել, ուտել ձկան պահածոներ, զարգացնել (տունդրայում) փայտամշակման արդյունաբերություն և նույնիսկ արտադրել փետրավոր գլխարկներ:

Տեղացի երիտասարդները, որոնց դպրոցում չեն սովորեցրել ձկնորսություն, վախենում են լողալ էսկիմոսների ավանդական նավակներով, բայց տրամադրում են նրանց սպիրտային խմիչքներ և «հնոտիք»: Հատկապես վատ է այն էսկիմոսների վիճակը, ովքեր ապրում են ամերիկյան ռազմական բազայից ոչ հեռու գտնվող Տուլեի շրջակայքում: Զինվորները փախուստի են մատնել գազաններին, տեղացիներին զրկելով ապրուստի միակ միջոցից՝ որսորդությունից:

Մի տհաճություն էլ եղավ. երկրաբանները հայտնաբերեցին ուրանի հանքեր: Ի՞նչ ազդեցություն կունենան ուրանի մշակումները մարդկանց և կենդանական աշխարհի վրա: Կապիտալիստներին այդ հարցերը չեն հուզում:

Ժան Մալորին համոզված է, որ կարելի է օգնել էսկիմոսներին: Դրա համար հարկավոր է մշակել տունդրայի յուրացման գիտական ծրագիր:

Էսկիմոսները դրա մասին կարող են միայն երազել:



# ԱՆՁԱՓԱՀԱՍ ՈՒՍԱՆՈՂՆԵՐ

ԳԱԳԻԿ ՍՏԵՓԱՆՅԱՆ

Դեռ չէր լրացել Վահանի վեց տարին, երբ նա արդեն ազատ գրում և կարդում էր և՛ հայերեն, և՛ ռուսերեն, լուծում թվաբանական խնդիրներ: Նրանից ետ չէր մնում կրտսեր եղբայրը՝ 5-ամյա Հայկը: Դպրոցական տարիքի չէին, բայց արդեն աշակերտներ էին:

Դպրոցն ավարտելուն պես՝ 1983-ի ամռանը հաջող հանձնելով ընդունելության քննությունները՝ Վահան և Հայկ Հարությունյանները դարձան Երևանի Կարլ Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի տեխնիկական կիբեռնետիկայի ֆակուլտետի ուսանողներ: Այստեղ նույնպես նրանք աչքի ընկան իրենց առաջադիմությամբ: Վերջերս ֆակուլտետի ԼԿԵՄ կոմիտեն եղբայրներին հասարակական աշխատանք առաջարկեց՝ ստանձնել խմբում ֆիզիկայից ու մաթեմատիկայից ետ մնացող ուսանողներին օգնելու պարտականությունը: Եվ ահա նրանք ինչպես դպրոցում, այստեղ ևս իրենց համակուրսեցիներին օգնում են լուծել ֆիզիկական և մաթեմատիկական բարդ խնդիրներ, բացատրում են դրանց լուծման եղանակները:

— Որպեսզի կարողանանք ինչպես հարկն է օգնել մեր համակուրսեցիներին, նախ ինքներս պետք է նյութից «գլուխ հանենք»,— նշում է Հայկը:— Դրա համար էլ բավականին ժամանակ ենք հատկացնում խնդիրների լուծմանը: Իսկ երբ դժվարանում ենք, մեզ օգնում է մեր հայրը:

Նրանց հայրը՝ Էդոնիս Հարությունյանը պոլիտեխնիկական ինստիտուտի ընդհանուր ֆիզիկայի ամբիոնի ավագ դասախոս է, իսկ մայրը՝ Լաուրա Դավթյանը, նույն ինստիտուտի օտար լեզուների ամբիոնի ավագ դասախոս (գերմաներենի մասնագետ է):

Քիչ է պատահում, բայց պատահում է: Վահանի և Հայկի հասակակիցները դեռ վեցերորդ-յոթերորդ դասարանի աշակերտներ են, իսկ նրանք մաթեմատիկական բարդ խնդիրներ են բացատրում իրենցից հինգ-վեց տարով մեծ համակուրսեցիներին:

— Ինչպիսի՞ն են ձեր հետագա ծրագրերը,— հարցին նրանք պատասխանում են.

— Մեր ավագ եղբայրը՝ Դավիթը, նույնպես տասներկու տարեկանում ընդունվեց պոլիտեխնիկական ինստիտուտ: Այժմ քսան տարեկան է, ասպիրանտ: Ինստիտուտն ավարտելուց հետո մենք կգնանք նրա հետքերով:

Մեր հանրապետության այս ամենակրտսեր ուսանողների բնավորության ամենանշանակալին՝ անսովոր աշխատասիրությունն է և անսովոր համեստությունը:

ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ

# Սպասում

Ամառը ասես վարդ լինի կարմիր,
Իսկ թերթիկները՝ խոստումներ անբիծ։
Եվ ո՞վ է հյուսել այդպես անթերի,
Հողի՞ց է ծնվել, թե՞ հեքիաթներից.

Ամեն օրվա մեջ մի փոքրիկ երազ,
Ամեն օրվա հետ մի տաքուկ կարոտ։
Որ գեղեցկությամբ շքեղ ու պայծառ,
Որքա՜ն դյութիչ է, որքա՜ն սրտամոտ։

Անծանոթ կանչեր, խոսքեր հազվագյուտ,
Որ թերթիկներով փռում է անփույթ։
Այս ամառը ինձ ի՞նչ կնվիրի՝
Ես անօգնական , ես հասկ ցորենի։







Ամերիկյան ֆիրմաներից մեկի մշակած ռոբոտը օժտված է մի շարք կարևոր հատկություններով։ Բացի այն, որ նա մարդկային ձայնով բարևում է, կարող է նաև տալ անհրաժեշտ առարկաները և խաղալ հեռուստախաղեր։ Տեղադրված ջերմային, ռադիոլոկացիոն և ակուստիկ հաղորդիչների օգնությամբ ռոբոտը ըզգում է մարդկանց ներկայությունը դեռ 10—15 մ հեռավորությունից, տարբերում է սովորական ձայները անսովոր աղմուկներից և այլն։

Այս հատկանիշների շնորհիվ նոր ռոբոտը կիրառվում է նաև պահակային ծառայությունում։ Կողմնակի մարդու ներկայության դեպքում նա հատուկ հաղորդիչների միջոցով ձայնային ազդանշաններ է արձակում և հաղորդում ոստիկանական բաժին։ Նոր ռոբոտը նաև մաքրասեր է։ Նա կարող է փոշեծծիչի օգնությամբ մաքրել սենյակները։ Դրա համար նրա մեջ ծրագրավորվում է սենյակների և կահույքի տեղադրությունը։ Բայց սա դեռ ամենը չէ։ Ռոբոտը նաև հրշեջ պահպանություն է կատարում. զգալով ջերմային տատանում և ծուխ, անհապաղ ազդանշաններ է հաղորդում հրշեջ ծառայությանը։

**Արհեստական քի՞թ։**

Անգլիացի ինժեներները ստեղծել են այդպիսին։ Ապարատի «հոտառությունը» կազմված է ավելի քան 400 առանձին ընդունիչ սարքերից, որոնք կապված են բազային հաշվիչ մեքենայի հետ։ Այդպիսի արհեստական քիթը կարող է ստուգել սննդամթերքի որակը կամ հետևել թունավոր նյութերի կոնցենտրացիային արտադրության մեջ։

ՍԼԱՎԿԱ ՄԱՆԵՎԱ

# Կանաչ քարով մատանու հեքիաթը

Մի տատիկ իր թոռնիկի համար գնել էր կանաչ քարով մատանի: Աղջիկն ամեն երեկո քնելուց առաջ նայում էր մատանու կանաչ քարին և նրան այնտեղ ծաղիկներով ու թիթեռներով լի կանաչ մարգագետին էր երևում, ու աղջկա աչքերը շուտ փակվում էին: Մի անգամ էլ նա տարօրինակ երազ տեսավ: Իբրև թե մատանին անհետացել էր մատից: Նա փնտրում էր և մեկը նրան ասաց.

— Քո մատանին կանաչ մարգագետիններում է...

Աղջիկը գնաց կանաչ մարգագետինները՝ մատանին գտնելու: Ճամփին հանդիպեց մեղվին ու հարցրեց.

— Մեղվի՛կ, մեղվի՛կ, դու չե՞ս տեսել իմ կանաչ քարով մատանին:

— Մատանիդ մեզ մոտ էր: Նա մեր փոքրերի համար ծառայում էր որպես կշռաչափ: Փոքրերը մատանիով չափում էին մեղրաքիչիները: Հիմա ամբողջ մարգագետնում ամենալայն մեղրաքիչիները մերն են:

— Մեղվի՛կ, խնդրում եմ քեզ, վերադարձրո՛ւ ինձ իմ մատանին, այն իմ ծննդյան օրվա նվերն է,— խնդրեց աղջիկը:

— Մատանին արդեն մեզ մոտ չէ: Փնտրիր մրջյունների՛ մոտ,— պատասխանեց մեղուն:

Աղջիկը շարունակեց ճանապարհը: Գնաց, գնաց, հասավ մրջյունների աշխարհը: Մրջյուններն վազվզում էին այս ու այն կողմ: Ոչ մեկը ուշադրություն չդարձրեց աղջկա վրա: Աղջկան հաջողվեց մեկին կանգնեցնել.

— Մրջյունի՛կ, մրջյունի՛կ, չե՞ս տեսել իմ կանաչ քարով մատանին:

— Ձե՛ռք քաշիր ինձանից, գործս շատ է,— բարկացավ մրջյունը:

Աղջիկը երբ շատ խնդրեց, մրջյունը խոստովանեց.

— Այդ մատանիով երիտասարդ մրջյունները մարմնամարզություն էին անում, կոփում էին իրենց մկանները, որպեսզի կարողանան տեղափոխել ցորենահատիկի ծանր բեռը...

— Խնդրում եմ, վերադարձրո՛ւ ինձ իմ մատանին, այն իմ ծննդյան օրվա նվերն է,— աղերսեց աղջիկը:

— Մատանին հիմա մեզ մոտ չէ, փնտրիր բզեզների՛ մոտ,— պատասխանեց մրջյունը:

Աղջիկը շարունակեց ճանապարհը: Գնաց, գնաց, հասավ բզեզների աշխարհը: Նրանք թռչկոտում ու աղմկում էին ինչպես ինքնաթիռները: Ամառ էր, ու նրանք իջել էին ծաղիկների վրա: Աղջիկը վախեցավ նրանց տեսքից: Բոլորը խոշոր էին ու գեր, հարթ, փայլուն թևերով: Աղջիկը շատ էր ուզում մատանին գտնել և ստիպված մոտեցավ ծանրությունից օրորվող ծաղկին, որտեղ նստել էր բզեզը:

— Բզեզի՛կ, բզեզի՛կ, չե՞ս տեսել իմ կանաչ քարով մատանին:

Բզեզը ուժեղ դզզաց.

— Այդ մատանին մեր ջահել բզեզների համար գիրության չափ էր ծառայում: Ով մատանու միջով չէր կարողանում անցնել, լռվում-մնում էր նրա մեջ՝ համարվում էր սիրուն, թմփլիկ բզեզ:

— Բզեզի՛կ, խնդրում եմ, վերադարձրո՛ւ ինձ իմ մատանին, այն իմ ծննդյան օրվա նվերն է,— խնդրեց աղջիկը:

— Մատանին հիմա էլ մեզ մոտ չէ, փնտրիր թիթեռնիկների՛ մոտ,— պատասխանեց բզեզը:

Աղջիկը շարունակեց ճանապարհը: Գնաց, գնաց, հասավ թիթեռների աշխարհը: Գույնզգույն թիթեռներ թռչկոտում էին անծայրածիր դաշտում: Աղջիկը չկարողացավ ոչ մեկին բռնել, նա դեռ չմոտեցած, թիթեռները թռչում, փախչում էին: Նա հոգնած նստեց կանաչի վրա ու նայում էր կակաչին: Կակաչի վրա նստել էր սպիտակ, քնքուշ մի թիթեռ, նրա գլխին թագի պես դրված էր մատանին: Աղջիկն ուրախացած կանչեց.

— Թիթեռնի՛կ, թիթեռնի՛կ, տո՛ւր ինձ իմ մատանին, այն իմ ծննդյան օրվա նըվերն է:

— Քո մատանին որպես թագ կրեցին բոլոր թիթեռ-հարսնացուներն իրենց հարսանիքներին: Հարսանիքներն արդեն վերջացել են, ես թռա եկա, որպեսզի մատանին քեզ վերադարձնեմ և հայտնեմ մեր շնորհակալությունը:

Աղջիկն ուրախացած ձեռքը մեկնեց, որ վերցնի մատանին... և քնից արթնացավ: Կանաչ քարով իր մատանին մատին էր:

## Գիտե՞ք ինչու է արագիլը կանգնում մի ոտի

Լինում է չի լինում մի երիտասարդ, գեղեցիկ արագիլ: Նա հպարտ քայլում էր դաշտերով, հագած իր ձյունաթույր վերնաշապիկը, սև վերարկուն և պսպղուն, երկարաճիտ կոշիկները: Քայլում էր դանդաղ, արժանապատվությամբ: Բոլոր արագիլները մատնացույց անելով նրան՝ հորդորում էին իրենց որդիներին օրինակ վերցնել նրանից:

Օրերից մի օր էլ այս արագիլը հանդիպեց մի գեղեցկուհի արագիլի, որն ապրում էր հարևան գյուղում: Հրապուրվեց նրանով և ամեն օր թռչում էր նրա մոտ, նրա բնի վերևում սավառնում: Բնի տիրուհին, իհարկե, անտարբեր չէր կարող մնալ նրա ուշադրության ու գեղեցկության հանդեպ:

Իրիկնամուտին, երբ արևը մայր էր մտնում և գորտերն սկսում էին իրենց հոգեզմայլ համերգը, արագիլը հրավիրում էր գեղեցկուհի արագիլին զբոսանքի: Նըրանք հանդարտ պտտվում էին գյուղի գըլխավերևը կամ թափառում դաշտերում՝ անկարող բաժանվել իրարից: Ծեր արագիլները նայում էին նրանց ու հոգոց էին հանում: Հիշում էին իրենց ջահելությունը ու ասում.

— Նայիր դրա՛նց, մեկը մյուսից գեղեցիկ է...

Արագիլն ամեն երեկո իր ընկերուհուն ուղեկցում էր տուն ու երկար ժամանակ կանգնում էր հարևանի կտուրին և նայում իր հարսնացուի տանը: Վերջապես նշանակեցին հարսանիքի օրը: Հրավիրել էին երկու գյուղի բոլոր արագիլներին: Ամեն հրավիրյալ մտածում էր այնպես հագնվել, որ դուր գա նորապսակներին.

— Աստված գիտե, թե նա ինքը ոնց է հագնվելու,— ասում էին իրար նորափեսայի մասին: Հասավ հարսանիքի օրը: Բոլորը հավաքվել էին հարսնացուի տանն ու անհամբեր սպասում էին փեսայի գալուն:

Փեսան եկավ ավելի գեղեցիկ հագնըված, քան սովորաբար հագնվում էր: Բայց, ի զարմանս բոլորի, նա եկավ ու կանգնեց մի ոտքի վրա, իսկ մյուս ոտքը ծալել, թաքցրել էր վերարկուի տակ: Այն ոտքը, որի վրա կանգնած էր, հոյակապ էր: Գեղեցիկ կոշիկ էր հագին՝ ոսկե կոճակով: Եվ քանի որ նա իր բարձր ճաշակով միշտ օրինակ էր ծառայել մյուսներին, ներկա գտնվող բոլոր երիտասարդները կարծեցին, թե դա մոդայի նորամուծություն է, իսկույն իրենք էլ իրենց մի ոտքը թաքցրեցին իրենց վերարկուի տակ ու կանգնեցին մի ոտքի վրա: Իրականում նորափեսան ժամանակը սպառելով զգեստներ ջոկելու վրա, ուշացել էր հարսանիքից և շտապելուց ճանապարհին կորցրել էր կոշիկի մեկը: Փեսացուին ուղեկցողները ամբողջ ճանապարհին, դաշտերում ու ձորերում փընտրել էին ու չէին գտել: Եվ նորափեսան հարսանքատուն էր եկել մի ոտքին միայն կոշիկ և կանգնել էր այդ մի ոտքի վրա:

Այդ օրվանից բոլոր արագիլները երբ կանգնում են, կանգնում են մի ոտքի վըրա, համարելով, որ այդպես ավելի լավ է:

## Հեքիաթ բարեկամության մասին

Աղավնին ու ճայը բարեկամացել էին, ամբողջ օրը թռչում էին միասին քաղաքի տանիքներից վեր, օդում շրջանակներ էին գծում, հետապնդում իրար, երբեմն էլ մխրճվում էին երկինք ու նմանվում երկու կետի, մեկը՝ սպիտակ, մյուսը՝ սև: Հետո, երկնային կապույտով ու մաքուր օդով արբած՝ իջնում էին ներքև, որպեսզի կարգավորեն շնչառությունները ու մի քիչ էլ զրուցեն իրար հետ:

— Այսօր երկինքը հրաշալի է. գուցե մենք, թանկագի՛ն ընկերուհի, մի անգամ էլ սլանանք երկինք, ավելի բա՛րձր, բա՛րձր,— առաջարկում էր աղավնին: Եվ խաղը սկսում էին նորից:

Գարնանային մի գեղեցիկ օր էլ, երբ երկինքը շատ էր կապույտ և ամպերը փրփուրի պես ճերմակ էին, ճայր առաջարկեց.

— Արի բռնենք աՀա՛ այն փոքրիկ ամպիկը:

Աղավնին Համաձայնեց: Նրանք սլացան վեր, ուրախացան, կատակեցին և իրար նշան անելով ցած իջան մի քիչ շունչ առնելու: Վերևից նրանք նկատել էին քաղաքամերձ փոքրիկ, Հոյաշեն մի տուն, որ գեղեցիկ պարտեզ ուներ ու ճերմակ ցանկապատ: Հոգնած իջան այդ սպիտակ ցանկապատին: Հանկարծ ճայր նկատեց, որ ինքը ամբողջովին թաթախվել է սպիտակ ներկի մեջ, որովՀետև ցանկապատը նոր էին ներկել: Աղավնին սպիտակ էր և նրա ներկոտվելը չերևաց: Ճայր կտուցով սկսեց մաքրել իր փետուրները և որովՀետև բնավորությամբ բռնկվող էր, սկսեց բղավել.

— Իմ գեղեցիկ սև փետուրները կեղտոտվեցի՞ն անճոռնի սպիտակ ներկով: Եթե չկարողանամ մաքրել, կմեռնեմ վիրավորանքից: Աղտոտվեց, փչացավ իմ սքանչելի սև Հագուստը:

Ճայր մոռացել էր, որ իր ընկերուՀու փետուրները սպիտակ են և անվերջ բարկացած կրկնում էր.

— Հիրրրա, Հիրրրա, Հիրրրու, անճոռնի սպիտակ գույն, ամենաանճոռնի գույնը աշխարՀի բոլոր գույներից...

Աղավնին նեղացավ ճայից, բայց ցույց չտվեց, նա սիրող սիրտ ուներ ու Հավատարիմ մնաց ընկերուՀուն:

Հաջորդ օրը ընկերուՀիները նորից թռան քաղաքի վրա, ասես ոչինչ չէր պատաՀել: Ճախրեցին վեր ու վար ու երբ Հոգնեցին, իջան բարձր շենքի ծխնելույզին: Հանկարծ աղավնին նկատեց, որ իր կուրծքը ամբողջովին մրոտվեց: Ճայր որովՀետև սև էր, նրա վրա մուրը չերևաց: Աղավնին Հիասթափված աղաղակեց.

— Ա՛խ, ալս ինչպե՜ս կեղտոտվեցի: Ճերմակ փետուրներս սևացան: Տեսնես նորից կսպիտակե՞ն:

Ճայր աղավնու խոսքերից խոցվեց և սկսեց նրան կտցաՀարել, Հարվածել թևերով: Շենքի տանիքով մեկ շաղ եկան աղավնու ճերմակ փետուրները: Նա մեծ դժվարությամբ դուրս պրծավ ճայի ճանկերից:

Այսպես վերջացավ աղավնու և ճայի բարեկամությունը:

Թարգմ. ՄԵՏԱՔՍԵԻ



# ԹՈՒՂԹ, ՈՐԸ ՉԻ ԱՅՐՎՈՒՄ



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Փորձը, որ ձեզ առաջարկում ենք կատարել, Համարյա ֆոկուս է՝ ձեռնածություն: Այդ փորձն անելու Համար ձեզ պետք կգա մետաղե Հարթ ձող, թուղթ, մոմ և լուցկի:

Թղթից մի նեղ շերտ կտրեք և փաթաթեք մետաղե ձողի վրա: Փաթաթեք այնպես, որ թուղթը ամեն տեղ լավ Հպվի մետաղին: Այժմ վառեք մոմը և փորձեք այրել ձողի վրա փաթաթած թուղթը, թուղթը չի այրվի: Թեպետ ձեզ Համար արդեն դժվար կլինի ձեռքում պաՀել տաքացած ձողը, բայց թուղթն, այնուամենայնիվ, չի այրվի:

Ինչո՞ւ: Չէ՞ որ ձողի վրա չփաթաթելու դեպքում նույն թուղթն իսկույն կայրվեր:

Այդ բացատրվում է մետաղի մեծ ջերմաՀաղորդականությամբ: Մետաղե ձողը թղթից արագորեն «խլում է» ջերմությունը և բավական ժամանակ թույլ չի տալիս, որ թուղթը տաքանա մինչև այրման Համար անՀրաժեշտ ջերմաստիճանը:

Այն ժամանակ, երբ դեռևս ՀանքաՀորերում էլեկտրական լամպեր չկային, Հանքափորները օգտագործում էին այսպես կոչված Դևիի լամպեր: Այդ լամպի բաղկացուցիչ մասերն էին մոմը և փոքրիկ մետաղե վանդակը: Մոմը դրվում էր վանդակի մեջ և, նույնիսկ, եթե ՀանքաՀորը լցված լիներ դյուրավառ գազերով, պայթյուն չէր առաջանում, որովՀետև մետաղե վանդակը շատ արագ կլանում էր մոմի բոցի առաքած ջերմությունը:



## ՀԱՅԱՍՏԱՆԸ ԹԱՆԳԱՐԱՆ Է ԲԱՑ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ

# ԱԶԱՏ ԳԵՏԻ ՀՈՎՏԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԸ

Ազատ և Վեդի գետերի վերին և միջին հոսանքների միջև ընկած տարածքում բազմազան ռելիեֆ ու հարուստ կենդանական աշխարհ ունեցող Խոսրովի արգելանոցն է, որ նշանավոր է նաև ճարտարապետական հուշարձաններով:

Գառնիից մի քանի կմ հեռավորության վրա, Գողթ գետի ձախ ափին Հավուց Թառ կոչվող համալիրն է, որի արևելյան ու արևմտյան հուշարձանախմբերը հըպարտ տարածվել են բարձունքի վրա: Այստեղից երևում է կանաչի մեջ կորած Գառնին և իր հեթանոսական տաճարը, Գառնիից Գեղարդ տանող ճանապարհը և ցածում աղմկող Գողթ գետը:

Հավուց Թառի արևելյան հուշարձանախումբը պարսպապատ է: Վանքի տարածքում ավերված, կիսավեր, անավարտ բազմաթիվ շինություններ կան, խաչքարեր, խոյակներ ու բոլորովին թարմ զոհաբերության հետքեր: Վանքի արևելյան մուտքի վերևում՝ շարվածքի մեջ, վանքի հիմնադրման խաչքարն է:

Արևելյան հուշարձանախմբից թամբաձև անցումը մեզ տանում է Հավուց Թառ համալիրի XIII դարի եկեղեցին: Սև ու կարմրավուն տուֆով կառուցված այս եկեղեցին շատ թարմ տեսք ունի ու կարծես ոչ թե ավերվել, այլ տակավին չի ավարտվել նրա շինարարությունը:

Բուսական ծածկն այս կողմերում խիստ անհամաչափ է տեղաբաշխված: Վանքի շրջակայքն, օրինակ, բոլորովին ամայի է: Գողթ կոչվող գյուղի ու Գեղարդի ուղղությամբ լանջը ծածկվում է թփուտներով ու փոքր ծառերով:

Հավուց Թառից արևելք, Գողթ ու Ազատ գետերի արանքում մի չոր սարի



լանջին Աղջոց վանքն է: Սարն այստեղ խոր ծալք է տալիս, այնուհետև մեծ շրջան օ[illegible]ելով փռվում, տարածվում ու բլուր-բլուր հոսում է դեպի Ազատի հունը: Բլուրներով ու ձորակներով կտրտված հարավային այդ արևկող լանջին ծուլորեն տարածվել է Գիլանլար գյուղը, նա հիմա գրեթե լքված բնակավայր է դեռևս կանգուն կիսագետնափոր տներով ու հսկա ընկուզենիներով:

Գիլանլարի ծեր կանայք ուխտավորների նման ամեն օր բարձրանում են Աղջոց վանք, մաքրում են եկեղեցիներն ու շրջակայքը: Բայց այդ խնամքն անզոր է բնական քայքայման ու կործանման դեմ:

Գլխավոր սբ. Ստեփանոս եկեղեցին խիստ քայքայված է, խորտակված են գմբեթն ու թմբուկը, իսկ հյուսիսային պատը վերևից ներքև ճաք է տվել:

Գլխավոր եկեղեցու հարավային պատին կից կառուցված է Պողոս-Պետրոս եկեղեցին: Հազվագյուտ այս հուշարձանը նույնպես անմխիթար վիճակում է: Դեռ լավ է, որ պահպանվել են մուտքի երկու կողմերում տեղադրված Պողոս և Պետրոս առաքյալների բարձրաքանդակները: Սբ. Ստեփանոս եկեղեցու հյուսիսային պատի տակ վանքի նշանավոր խաչքարն է կանգնած: Մի քիչ ցած՝ գետին տապալված հսկա խաչքար կա, ավելորդություններից զուրկ, պարզ ու կուռ: Վանքից ցած հարավարևելյան ուղղությամբ լեռնային գետակ է հոսում, թեք լանջով աղմկելով հասնում է հովիտ ու խառնըվում Ազատ գետին:

Ազատի հունով դեպի վեր, Գառնիից մոտ 15 կմ հեռավորության վրա գտնըվում է Կաքավաբերդը: Անառիկ, հպարտ, նա ապավինել է ահռելի հրվանդանին ու արծվի նման իր ճիրան-պարիսպները մխրճել լեռան մեջ: Մի փոքր վզիկով հրվանդանը միացած է մայր լեռնազանգվածին: Մնացած բոլոր կողմերից կատարելապես անմատչելի է: Ազատի հովտից նեղ, ոլորապտույտ, մեծ թեքություն ունեցող կիրճով մենք հասնում ենք Կաքավաբերդի մուտքին: Գարնան սկզբին, երբ հարավային լանջերին ձյունն արդեն հալված է, այս կիրճում մի քանի մետր խորությամբ ձյուն է նստած: Մուտքի դիմաց, բարձունքի վրա ժայռափոր մա-

տուռն է և այնուհետև բերդն իր միջնաբերդով:

Կաքավաբերդի մոտակայքում, Ազատ գետի նույն աջ ափին Իմիրզիկ կոչվող լքված գյուղն է: Այստեղ պահպանվել է միջնադարյան եկեղեցու հիմք, իսկ մոտակայքում հազվագյուտ տապանաքարեր, խաչքարեր:

Իմիրզիկից մի քանի կմ Ազատի հունով դեպի վեր այս կիրճի թերևս ամենահետաքրքիր շինությունն է՝ երկհարկանի մի ժայռափոր կառուցվածք, որին «Մենանոց» անվանեցին: Սա ոչ թե ժայռի մեջ փորած կառույց է, ինչպես Խոր Ջորի կամ Գեղարդի ժայռափորները, այլ մի առանձին կանգնած ժայռ, որ կարծես գետնի տակից է աճել ու խոր արմատներ ունի հողում:

Նույնիսկ շատ մոտ տարածությունից, կարելի է չնկատել ու կողքից անցնել, որովհետև դա ի վերջո մի բնական ժայռ է: Ջորին նայող կողմից մի ուղղանկյուն բացվածքով մտնում ենք առաջին հարկ, որ պարզագույն թաղածածկ սրահ հիշեցնող տարածություն է՝ դահլիճով ու բեմով: Մյուս կողմից մոտ 3 մ բարձրության վրա լոջա է, որտեղ հասնելու համար պետք է մագլցել ժայռով, որովհետև աստիճաններ չկան: Այս 5—6 մ երկարություն և մոտ 1,5 մ լայնություն ունեցող տարածությունը երկու նեղ կողմերից ներամփոփված է ժայռերով: Նրանցից մեկի վրա խաչ է փորագրված: Երկայնական կողմից երկու մուտք-բացվածքներով մտնում ենք առաստաղ չունեցող մի խուց և ծածկ ու աՀռելի արձագանք ունեցող մի ուրիշ խուց:

Այս բոլորը լավ երևում է ձմռանը, երբ ծառերը մերկ են: Ջյունն իր նուրբ ծածկոցը փռում է Մենանոցի վրա և անձյուն են մնում միայն ուղղահայաց մակերեսներն ու աշտարակաձև ժայռերը: Ձյունածածկ բաց գույների միջից թուխ աչքերի նման մեզ են նայում երկրորդ հարկի զույգ խուցերի մուտքերը:

Իսկ խոր աշնանը Մենանոցը թաղվում է շլացուցիչ դեղինների ու կարմիրների մեջ: Ու ժայռն ինքն էլ փոխ է առնում այդ գույները:

Մենանոցից քիչ վեր Ազատի հունը նեղքվում, բաժանվում է երկու կիրճի: Ավելի վայրի, քան Ազատի հունը, և շատ դժվարանցանելի, այդ կիրճերը ձգվում են տարբեր ուղղություններով, իրենց մեջ թողնելով հսկայական լեռնազանգվածը: Այստեղ մեծ խորություն ունեցող քարանձավներ կան: Արևոտ եղանակին քարանձավների խորքից դիմացի լանջի անտառն այնպես է շողշողում վառ, լուսավոր գույներով, որ կարծես ոչ թե իրական պատկեր, այլ սև անկանոն շրջանակի մեջ առած գունավոր լուսանկար լինի:

Ազատի հովիտն իր ողջ վեհությամբ երևում է սարահարթից: Այստեղից երևում է նաև Ազատի երկարավուն հունը, Գեղամա լեռները և հեռվում շողշողացող մեծ Մասիսի գագաթը:

**ՆՈՒՆՈՒՖԱՐ ՄԻՆԱՍՅԱՆ**
ճարտարապետ

## ՏՈՄԱՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ




**Հայոց տոմարի 7-րդ ամիսն է: Վանական Վարդապետը Մեհեկի անունը կապում է մահ բառի հետ: Նա գրում է, որ այդ ամսին բույսերն ու տնկիները ձյունածածկ և եղյամապատ լինելով, մահացածի նման են, այսինքն՝ աճը դադարում է, մեռյալ վիճակի մեջ են:**

(Տևել է փետր. 7-ից մինչև մարտի 8-ը)



# ՂԱԶԱՐՈՍ ԱՂԱՅԱՆԻ ՏՈՒՆ-ԹԱՆԳԱՐԱՆԸ

Բոլնիս Խաչենի բնակիչների նախնիները գաղթել են Ղարաբաղից 1777—89 թվերին, երբ Ղարաբաղի թուրք խաները սկսել են հայերի մասսայական կոտորածը: Խամսայի մելիքությունները քայքայվում են: Խաչեն գավառի բնակիչները թողած հայրենի տունը, բռնում են օտարության ճանապարհը: Վերդի Աղայանին դեգերումները հասցնում են ներկայիս Բոլնիս Խաչենի տարածքը: Տեղանքը նրան դուր է գալիս: Վերադառնում և հանդիպող համագյուղացիներին պատմում է տեսածի մասին: Խաչենցիները դիմում են վրաց Իրակլի թագավորին բնակության թույլտվություն ստանալու: Եվ քանի որ հողն անմշակ էր, իսկ հայերը աշխատասեր ու ստեղծարար ժողովուրդ՝ Իրակլին տալիս է իր համաձայնությունը:

Քերծի քարաժայռի տակ Վերդի Աղայանը դնում է նոր Խաչենի հիմնաքարը: Հենց այս տանն էլ 1840 թվին ծնվում է ապագա գրողը, հասարակական գործիչն ու մանկավարժը: Տունը մինչև այսօր էլ կա: Ճիշտ է, ժամանակը իր կնիքն է դրել, բայց խնամող, հոգածու ձեռքը զգացվում է ամենուր: Հակոբ Հայրապետյանի՝ Բոլնիս Խաչենի գյուղսովետի նախագահի համար, այս տունը սրբություն է: Նրա նախաձեռնությամբ էլ տունը վեր է ածվել թանգարանի: Ալեզարդ, ջինջ կապույտ աչքերով Հակոբ պապը հյուրերին մեծ սիրով է ուղեկցում թանգարան և հենց ինքն էլ պատմում մեծ գրողի կյանքի ու գործունեության մասին, ցույց տալիս թանգարանի հավաքածուն՝ գրքեր, փաստաթղթեր, նկարներ, քանդակներ:

«Իմ կյանքի գլխավոր դեպքերը» հուշագրության մեջ Աղայանը գրում է. «Իմ

մանկությունն ու պատանեկությունը ես մանրամասն նկարագրել եմ «Արություն և Մանվել» վեպի մեջ: Այդ վեպի Արությունը ես ինքս եմ... Տերերն ինձ սիրում էին, սուփրումն իրանց կողքին նստեցնում, երգել տալիս, հիանում և օրհնում ինձ, մայրերը երանի էին տալիս մորս, հայրերը՝ հորս: Գյուղի մեծերի մեջ գրագետներ չկային, իսկ մանուկների մեջ միակ գրագետը ես էի»:

Խավարի մեջ տառապում էր գյուղը: Ուսումնատենչ պատանին մի երազանք ուներ՝ սովորել և լուսավորություն տարածել, հայ մանուկներին գրել-կարդալ սովորեցնել, դաստիարակել: Մեծ դժվարությունների, զրկանքների գնով նա հասնում է Մոսկվա, Պետերբուրգ, ուսում ստանում, շփվում ժամանակի առաջավոր մտածողների հետ, հաղորդակցվում նրանց գաղափարներին, և վերադառնալով՝ 1870 թվականից Ախալցխայում սկըսում է իր գործունեությունը ուսուցչական ասպարեզում: Ահա թե ինչ է գրում նա այն օրերի դպրոցի մասին. «Եվ ի՞նչ տեսա, տե՛ր իմ աստված... Հիմա էլ որ միտըս է գալիս՝ միսս սարսռում, մազերս փշաքաղվում են: Այցելությունս սկսեցի նախակրթարանից: Այդ դասարանը բուն ուսումնական շենքից անջատված էր, ինչպես անջատված է լինում գոմը լավ շենքերից: Եվ հենց գոմի էլ նման էր արտաքուստ, իսկ ներքուստ նման էր խոզանոցի, երբ բազմաթիվ մեծ և փոքր խոզուկներ իրար գլխով ընկնելով՝ որը բրթբրթում է, որը խռխռում, որը մրթմըրթում և որն էլ ճղավում, ճչում: Անկարգ, անկանոն, ամեն մեկի ձեռին մի առանձին գիրք կամ տետրակ, իսկ վարժապետը մի կատարյալ վայրենի, իսկ և իսկ խոզարած, մի երկայն ճիպոտ ձեռին մեկի գլխին էր խփում, մյուսի՝ ձեռներին»:

Դժվար չէ պատկերացնել, թե ինչպիսի սրտով են դիմավորել [illegible] վարժապետները ու հոգևոր հայրերը առաջադեմ գաղափարներով տոգորված երիտասարդին: Աղայանը չի վախենում պայքարից, ձգտում է հնարավոր ամեն բան անել հայ մանուկների կրթության գործը քիչ թե շատ կանոնավորելու համար:

Հակոբ Հայրապետյանը հազվագյուտ լուսանկարներ է հավաքել, ի մի բերել թանգարանում: Ահա դրանցից մեկը, արված 1908 թվին, նկարիչ Գևորգ Բաշինջաղյանի արվեստանոցում. հայ ազգի մեծերն են՝ Կոմիտասը, Արշակ Չոպանյանը, Հովհ. Թումանյանը, Ավ. Իսահակյանը, Գևորգ Բաշինջաղյանը, Վրթանես Փափազյանը և Ղազարոս Աղայանը: Ահա մեկ ուրիշ լուսանկար՝ Թումանյանը, Աղայանը, Շիրվանզադեն միասին: Թանկագին մասունքները շատ են. 1902 թ. մայիսի 19-ին Թբիլիսիում նկարած իր «Ծաղիկներ» նատյուրմորտն է նվիրել գրողին Գևորգ Բաշինջաղյանը: Ահա Միքայել Բադալյանի լուսանկարը, որի հետ Ղազարոսը ուղևորվել է Մոսկվա՝ ուսումնառության: Մի շատ ուշագրավ լուսանկար էլ կա. 1902 թիվ, Թավրիզ. գրողի «Անահիտ» հեքիաթի առաջին բեմադրության դերակատարները Թավրիզի փողոցում լուսանկարվել են բացօթյա բեմի մոտ: Անկյունում «Ճախարակ» բանդակն է: Անմիջապես հիշում ես «Ճախարակ» բանաստեղծությունը, որ հայ գեղջկուհու բազում հոգսերի, նրա տխուր կյանքի պատկերն է ներկայացնում:

Թանգարանի սրահներից մեկի պատուհանից երևում է անտառոտ սարալանջին հպարտորեն երկինք ձգվող Մուղրուղաշեն եկեղեցին՝ հայ ճարտարապետության հետաքրքիր մի կոթող: Այնտեղ ամեն գարնան մանուշակներ ու դաշտային ծաղիկներ են աճում, որոնց փնջերը միշտ զարդարում են Աղայանի տուն-թանգարանը:

ԱՍՊՐԱՄ ԾԱՌՈՒԿՅԱՆ

Հանձնված է տպագրության 17.04.1984 թ. Ստորագրված է տպագրության 14.06.1984 թ.։
ՎՖ 11012։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 64032։ Պատ. 1032։ Գինը՝ 15 կ.։
Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում. Օրջոնիկիձեի պողոտա 2։

Сдано в набор 17.04.1984 г. Подписано к печати 15.06.1984 г. Формат 70×100 1/16. ВФ 11042. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 64032. Заказ 1032. Цена 15 коп.
**Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.**





Արշավախումբն ընկել էր ծանր, անելանելի դրության մեջ, անհետացել էին կրակ վառելու միջոցները, իսկ սառնամանիքը —48° էր... Փրկության միակ միջոցը մնում էր միայն սառույցը... Սակայն հնարավո՞ր է, արդյոք, սառույցից կրակ ստանալ։

**«ՊԻՈՆԵՐ» № 6-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ**

1. Առաջին վաճառականն ուներ 1, 3, 9 և 27 կգ, իսկ երկրորդը՝ 1, 3, 9, 27 և 81 կիլոգրամանոց կշռաքարեր։

2. Հոտում կար 123 ոչխար և 9 այծ։

3. Երբ ձիավորը իր ձին միացնում է մյուս ձիերին, ստացվում է 20 ձի, մեծ տղան ստանում է ձիերի կեսը՝ 10 ձի, միջնեկը՝ 5 ձի, փոքրը՝ 4 ձի։ Այնուհետև ձիավորն իր ձին առած շարունակում է ճանապարհը։



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ








ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

